

# ԱՊԱՇԽԱ-
# ՐԱՑՈՅՑ

---

Ապաշխարեցէք, զի մեր-
ձեալ է արքայութիւն
երկնից: Մատթ. Դ. 17:

---

Ի ԶՄԻՒՌՆԻԱ

Տպագրութեամբ
Հօման Հալլօքի:

1839

# [illegible]



## ԳԼՈՒԽ Ա.



[illegible] ։

ԱՅՍ՝ փոքրիկ բարեկամներս՝ որ աս գիրքը կը կարդան, կամ որոնք որ կը լսեն աս գրքին կարդացուածքը, կարելի է որ կուզեն իմանալ թէ՝ ինչու ես աս գիրքը մէկ մօր մը իր տըղուն հետ խօսակցութիւն ընելու կարգովը կապուած շիներ եմ։ Ասիկա ես շինեցի՝ որ բանը էվելօք հաճելի կարենամ ընել. նաև կը խորհիմ որ՝ աս կերպովս էվելի դիւրին հասկըցվելու կրնամ ընել աս գիրքը։

Հիմայ ան բարեպաշտ կնկանը վըրայ՝ որ իր տղուն հետ հետևեալ խօսակցութիւնները կընէ, պէտք է գիտնալ, որ անիկա շատ անգամ իր

տղոցը համար՝ և անոնց հետ ալ մէկտեղ աղօթք կընէր . և ինքը կը փափաքէր՝ որ ան տղաքը ամէնը Յիսուս Քրիստոսի բարեկամները ու հետևողները ըլլան ։ Աս կնկանը անունը Դամարիս էր , և տղոցը անուններն էին Գրիգոր՝ տասներկու տարվան , Եղիսա՝ ինը տարվան , ու Երմոզ՝ վեց տարվան ։

Աս կնկանը սովորութիւնն էր՝ որ իր տղոցը ազատութիւն կուտար իրեն հետ շատ համարձակ խօսելու . և անոնք ալ ասանկ կընէին , որովհետև գիտէին թէ որչափ մարերնին զիրենք կըսիրէր , և կուզէր ինքը՝ որ իրենց մէկ պիտանի վարժութիւն մը տայ ։

Հիմայ Երմոզը՝ որ ամէնէն պըզտիկն էր , սկըսեց զըուցել . Մա՛յրիկ , ես չեմ գիտեր որ աղէկ մը հասկընամ թէ՝ ինչ պիտի ըլլայ Մ՝եղքի վրայ ապաշխարելը կամ զղջալը . կըկամի՞ս հրամանքդ ինծի աս բանը մէկնել ։

Մայր․ Ի՛մ զաւակս․ Թէպէտ ես ատ բանին վրայ շա՛տ զրուցած եմ ձե֊զի ամենուդ ։ Շատոնցվընէ իմ մտքիս մէջը կայ , որ էվելօք ժամանակ գըտ֊նամ ու հոգ տանիմ՝ որ դուք բաւա֊կան կարող ըլլաք պայծառ կերպով ու կատարելապէս հասկընալու ան Ապաշխարելը , թէ ի՛նչ կընշանակէ ։

Էլիզա․ Մա՛յր՝ ես գիտեմ Ապաշխա֊րանքին ի՛նչ նշանակելը ․ ըսել է թէ՝ Մեր մեղքին վրայ Տրտմիլ ։

Գրիգոր․ Մա՛յր իմ՝ աղէկ ընդ֊հանրապէս մենք ամենս ալ գիտենք ։ Բայց ես կուրախանամ որ՝ Երմոզը ատոր վրայով մօրս հարցուց ․ ինչու որ ես պիտի զրուցեմ՝ որ շատ անգամ իմ վրայովս անանկ մը կիմանամ որ տակաւին չի հասկըցածի պէս եմ ան Զղջումին կամ ապաշխարանքին ինչ նշանակելը ։

Մայր․ Ի՛մ զա՛ւակնե՛րս , բոլորովին աղէկ հասկընալը և ինչ նշանակե֊լը սորվելնուդ մէջը իմանալը դիւրին

բան չէ ։ Դախնիք՝ և շատ եկեղեցք բարեպաշտ մարդիկներն ալ ասանկ կը զրուցեն ձեզի ․ Սուրբ Հոգիին կը-կարօտինք մենք՝ որ մեզի հասկըցու-նէ և իմացունէ թէ ինչ է ճշմարիտ Օղջումը ։ Ու քանի որ ես կը ջանամ ձեզի աս բանը աղէկ մը հասկըցու-նել , Ամենակարող Աստուծմէն խըն-դրեք կընեմ Քրիստոսի միջնորդու-թեամբը՝ որ ձեզի իր Սուրբ Հոգին-տայ , որպէս զի կարող ըլլաք ան Օղջումին կամ Ապաշխարանքին ինչ ըլլալը հաստատուն ու շատ աղէկ կերպով մը իմանալ , ինքնիրէննուդ ձեր սրտին մէջը զգալով ան Օղ-ջումը ։

Շիտակ ես դուն Ադիսա , որ զը-րուցեցիր թէ՝ Օղջալը կըցուցընէ մեղքերնուս վրայ տրտում ըլլալ ։ Բայց դուք ամէնքնիդ ալ գիտցէք՝ որ Տրտմութիւնը զանազան տեսակներ ունի ։ Մեզի պէտք է որ՝ մեր մեղքե-րուն վրայ տրտմութիւն ընելու ճըշ-

մարիտ կերպը միայն ունենանք ներ_սիրելինիս . քանզի ուրիշ տեսակ տրտ_մութիւնով չե՛ կրնար ըսվիլ որ՝ մեղ_քերնուս վրայ զղջում կընենք ։

Եղիսա . Ա՛յո՝ մտքս կուգա՛յ հը_րամանքիդ ,՝ որ խնտո՛ր տրտում էի ես՝ երբոր անցած շաբաթ օրը անձրև կուգարնէ , որ մեզ արգիլեց՝ան ժուռ գալէն՝ որն որ հրամանքդ մեզի խոս_տացեր էիր ։

Եփրոզ . Շ՛ապա ես խնտոր տրտում էի՝ երբոր կորսընցուցի իմ Թուուցե_կըս , որնոր Աստուածէլ իմ քեռիս շը_ներ ու ինծի տըվեր էր ։

Անյր . Ընէկ . հիմայ քիչմը խօսինք տրտմութեանը զանազան տեսակնե_րուն մէկ քանիին վրայ , և տեսնանք թէ ինչ են անոնք ։ Եղիսա , մե_զատըրըվելու մէկը կա՛ր մի , որ մենք անցած շաբաթ օրը չի կրցանք ժուռ գալ ։

Եղիսա . Ձէ մայրիկ . Ըստուած էր՝ որ ան անձրևը բերել տըւաւ ։ Իմ

միտքս ալ կուգայ՝ որ Հրամանքդ անատենը մեզի զրուցեցիր թէ, պէտքը չէ որ մենք սրդողինք բարկանանք՝ կամ գանգատ ընենք. ինչու որ Աստուած՝ ինչպէս որ ինքը աղէկ կըսեպէ, մեզի ասանկ եղանակ մը կուտայ. և ինքը ինչ որ ընէ նէ՝ աղէկ է ու շիտակ:

Մայր. Հոգիս՝ անանկ է նէ պիտի ըսենք որ, ասիկա է մէկ տեսակ տրտմութիւն մը՝ որ մենք կրնանք ունենալ. քանզի անատենն ալ՝ երբոր ոչ մենք և ոչ ուրիշ մէկը մէկ սխալ բան մը գործած ըլլայ, կրնանք որ տրտմինք՝ և ուզենք որ՝ ան պատահած բանը տարբեր եղած ըլլար քիչ մը:

Գրիգոր. Այո՛ մայր, ես ալ երէկ տրտմութիւն իմ վրաս իմացայ անատենը, երբոր Նրմոզին ոտքը սառին վրայէն սահեցաւ՝ և գետինը ինկաւ, ու այնչափ վնասեցաւ իր անձը: Անիկա յանցանք մը չունէր, ինչու որ

Հրամանքդ իրեն հրաման ըրեր էիր՝ որ երթայ պարտէզին մէջը քիչ մը ժուռ գայ ։ Ինծի շատ տրտմութիւն եղաւ երբոր անոր քաշած ցաւը տեսայ , և ուզեցի՝ որ իրեն վնաս մը եղած չըլլայ ։

Մայր ․ Ապրիս տղաս ․ Հիմայ ձեզմէ մէկն ալ կրնայ տալ ինծի աս տեսակ տրտմութեանը մէկ ուրիշ օրինակ մը կամ նշան մը ։

Ներսէս ․ Ես ալ ներսիդիս տրտմութիւն իմացայ մա՛յր , երբոր սառին վրայէն գետինը ինկայ ․ Հիմայ անիկա միտքս իյնալու ատենը տրտմութիւն կըզգամ քիչմը ։ Չեմ մոռնար որ ես միշտ բոլոր իմ կեանքիս մէջը առաջուց հետէ սաստիկ գէշ կերպով վնասներու հանդըպած էի ։

Մայր ․ Գիտցուք թէ՝ Ներսէս , ես քեզ արգիլած ըլլայի՝ որ չերթաս ժուռ գաս պարտէզին մէջը ․ և անատեն աս բանը գլխուդ գալու ատենը դուն ինչ կերպ զգացում պիտի ունենայիր ներսիդիդ ։

Սերոբէ · Կարծեմ թէ՝ ան ցաւը քա-
շելէս ետքը, ու երբոր Գրիգոր եղ-
բայրս իմ առջևս ինկաւ իս տուն բե-
րելու նէ, պէտք էր որ ա՛ն իմ ան-
հնազանդութեանս համար տրտմու-
թիւն մը զգացած ըլլայի ։

Մայր · Ինչո՞ւ սա անհնազանդու-
թիւնը քու ներքինդ ցաւ կամ տրտ-
մութիւն պիտի պատճառէր ։

Սերոբէ · Անոր համար որ՝ կըվախ-
նայի ես թէ հրամանքդ իս պիտի
պատժես ։

Մայր · Ուրեմն կերևայ որ՝ ուրիշ-
տեսակ տրտմութիւն ալ կայ եղեր ։
Ըս ա՛ն տրտմութիւնն է՝ որ մենք կը-
մանանք, երբոր յանցանք մը գոր-
ծած կըլլանք՝ ու երբոր բան մը քա-
շելու կըլլանք, կամ բան մը քաշե-
լու երկիւղ կունենանք՝ մեր ըրած
յանցանքին պատճառաւը ։

Գրիգոր · Մա՛յր՝ կերևայ որ ես ա-
մեն ատեն տրտմութիւն կըքաշեմ,
չէ թէ որ ես յանցանք մը ըրած եմ,

Հապա որ կըտեսնամ տղոցը յանցանք ընելը, ու գիտեմ որ ան ըրածներն հրամանքերդ չուզած բաներն է :

Աղջիկ. Այո՛ իրաւ է, որ անատենը հրամանքդ մեզ կըշեխես ան բանին համար անանկ մէկ կերպով մը՝ որ- պէս թէ դուն ես մեր մայրը :

Մայր. Աղջիկս, անվայել է աս խօսքը՝ որ եղբօրդ կըզըրուցես դուն : Անիկա քեզմէն ու Սիմոնէն ալ մեծ է. և թէ որ ինքը ձեր յանցանք ը- րած ատենը ձեզ կըյանդիմանէ ա՛ր- ատենն որ ես ձեր քովը եղած չըլլամ, անիկա աղէկ կընէ. Թէպէտեւ պէտք է իրեն ալ՝ որ սիրով յանդիմանէ : Ես կուրախանամ որ տեսնամ թէ՝ իմ տղոցմէս մէկը տրտմութիւն կըքաշէ մէկալներուն յանցանք մը ըրած ա- տենը : Մեզի պէտք է ամէն իժիր տրտմութիւն քաշել, երբոր տես- նանք մէկը որ յանցանք մը կըգործէ. և պէտք է որ ջանանք ցուցընել անոր մարդուն՝ թէ ան ըրած բանը արժան

չէր իրեն որ ընէր ։ Մեր համար կըր-
նանք ըսել թէ՝ աս ալ մեկ ուրիշ
կերպ տրտմութիւն մըն է ։

Ասկէց 'ի զատ , ատեն ատեն մենք
չե՞նք մի տրտմիր՝ մեզի պէտք եղած
բանը որ պիտի ընենք , զանց ընել-
նուս համար ։

Երկրորդ . Այս՝ հրամերնես մայր .
միտքս կուգայ՝ որ անցած շաբթու
երբոր հրամանքնիդ ժամու գալու կեր-
թայիք , ինծի զրուցեցիր որ ես աղէկ
աղջիկ մը ըլլամ , ու հանդարտ նըս-
տիմ՝ և սերտեմ իմ համարս ։ Ես ալ
ըսածդ չըրի , ու քեզի անհնազանդ
եղայ . և հրամանքդ տուն գալէն ա-
ռաջ՝ սկըսեցի տրտմութիւն ունե-
նալ ան ըրած բանիս վրայ , բայց
ալ ատենն ալ անցեր էր համարս
սերտելու ։

Երրորդ . Օր մը ես ալ տրտմութիւն
քաշեցի՝ որ ձեր խօսքին մտիկ չըրի
մայր , և կանչվըռտուք ընելէն չի
դադրեցայ՝ երբոր Գրիգոր հիւանդ
էր ։ Հրամանքիդ միտքը կուգա՞յ՝ որ

իմ պզտիկ կատուքս ձեռքէս առիր, և թող չի տուիր որ նորէն անիկա ձեռքըս առնեմ իրեք օր · որ անիկա ինծի շատ տրտմութիւն քաշել տուաւ ։

Մ̃յր · Բայց ինչու համար տրտմութիւն քաշեցիր Աղջիկս՝ երբոր դուն ինծի անհնազանդութիւն ըրիր, և քու դասդ չի սերտեցիր նէ ։

Աղջ̃ · Հրամանքդ գիտես մայր · Հրամանքդ ինծի զրուցեցիր որ՝ եթէ ես դասըս չի սերտեմ նէ, հետևեալ օրը ձեր հետը չի պիտի երթամ ժուռգալու կառքով · ու ես եղածին չափ յիմարութիւն ըրի՝ որ ան աղուոր ժուռգալը կորսընցուցի մէկ քիչիճիկ մը խաղալուս համար ։

Մ̃յր · Անանկ է նէ՝ կրնանք հիմայ ասանկով ուրիշ տեսակ տրտմութեան մը վրայ խօսիլ ։ Ան է մէկ տրտմութիւն մը՝ որ մենք կըքաշենք մեզի պէտք եղած ընելու բանը զանց ընելնուս համար՝ կամ (որ նոյն բանն է) մեր պարտաւորութիւնը չի կատարելնուս համար, և քիչ մը նեղու-

թիւն կըքաշենք՝ կամ ներողութիւն քա-
շելու երկիւղ կունենանք ան բանին համար ։

Գրիգոր. Ես ալ կըկարծեմ մայր, որ ուրիշները իրենց պարտքը զանց ըրած տեսնալնուս ատենը տրտմութիւն կրնանք ունենալ, ճիշտ նոյնը կրնանք զգալ երբոր կըտեսնանք անոնք որ յանցանք մը կըգործեն ։

Մայր. Իրաւ է՝ տղաս, և ասոր ալ կրնանք ըսել թէ մէկ ուրիշ տեսակ տրտմութիւն մըն է ։ Մեզի պէտք է որ՝ զանց չընենք ան նոյն ժամանակը՝ ան որ մեր պարտքն է, ամէն կերպ յարմար ճամբաներով ջանք ընել յորդորելու ուրիշներն ալ իրենց պարտաւորութեանը ։

Նշան. Մայր՝ աս մեր զրուցած տեսակ տեսակ տրտմութիւններուն ո՞րն է՝ որ ան մեզի պէտք է ունե-նալ մեր ապաշխարելու ատենը ։

Մայր. Անտարակոյս պէտք է ըլլալ՝ որ անոնցմէ մէկն ալ չէ ճշմարիտ

տրամութիւն ։ Մ՛էկ մարդ մը որ զըղջում կընէ՝ միայն իր մեղքերուն վըրայ կըզղջայ ։ Եւ ատանկով անիկա չի կրնար ուրիշ մարդոց մեղքերուն վրայ զղջում ընել ։ Ինքը գուցէ տրամութիւն կունենայ՝ որ ուրիշները յանցանք ըրած են կամ իրենց պարտքը զանց ըրած են , բայց անիկա ան տրամութիւնը չէ՝ ինչ որ ,,Զղջում ընելով կիմացվի նէ ։

Աստուած ձեզմէ կըպահանջէ՝ որ զղջում ընէք , անոր համար որ՝ դուք, դուն Գրիգոր , դուն Եղիսա , դուն Ե՛րմոզ , անանկ բաներ ըրած ունիք՝ որ յանցանք են ․ և անանկ բաներ զանց ըրած ունիք՝ որն որ ձեր պարտքըն էր ընելու ։ Եւ չէ թէ մենք պիտի բսենք որ՝ այս ինչ բանը ընելնուս կամ չընելնուս համար զղջացինք , որ անոնք մեղք մը չեն ըլլըվելովը կամ չըլլըվելովը ։ Ան կերպ բաներուն վրայ կըլլայ որ տրամութիւն ունենանք , բայց չենք կրնար ըսել թէ

Օ՚ղջում ունեցանք ։ Մ՚խայիլ կուզմիչյ
ան , որ երէկ Գ՚րիգորը երբոր դուռը
կըրթանար , Ն՚րմոզը հոն կայնած ըլ-
լալով՝ դուռը անոր գլխուն զարկաւ ,
ու անանկ վնասեց անոր՝ որ կանչ-
վըռտուքով լալ սկըսեց ։ Բայց
Գ՚րիգոր աս բանը ընելուն համար
մեղադրելի չէր · ինչու որ անոր միտ-
քը չէր որ Ն՚րմոզը այնչափ մօտ կայ-
ներ էր դուանը ։ Ինքը շատ տըրտում
եղաւ աս ըրած բանին համար · բայց
պատշաճ չէ՞ որ ըսվի թէ՝ ինքը Օ՚ղ-
ջում ըլլաւ ան բանին վըրայ ։ Ն՚յսպէս
ես ալ չէի գիտեր մինչև աս առտու ,
որ Գ՚րիգորը հիւանդ է եղեր գի-
շերը ։ Թ՚է որ առաջմանց ես գիտ-
ցած ըլլայի ան , պիտի գիտնայի՝ որ իմ
պարտքս է երթալ քովը՝ ու հոգալ
անիկա ։ Կըրցածիս որ չիմացայ ան
նոյն ժամանակը , որ երթայի քիչ մը
իրեն համար պէտք եղածը ընէի ։
Բայց աս բանին վըրայ Օ՚ղջում չեմ
ունենար · ինչու որ ամենևին չէի կըր-

նար մեղադրըլիլ․ և պատճառ չու֊նէի խորհելու Թէ՝ Գրիգորը հիւանդ էր մի ։

Հիմայ մենք ըստ բաւականին խօ֊սեցանք մինչև աս առեն աս նիւԹին վրայ․ վաղը նորէն պիտի խօսակցինք աս նիւԹին վրայով ։

Գրիգոր՝ բեր ինծի Աստուածա֊շունչը, ու Մարիամին զրուցէ որ նէրս գայ ։ Իրիկուան աղօԹքին ժա֊մանակն է ։



# ԳԼՈՒԽ Բ.

Մեղքը ինչ է : Ընդհանրական հանդերձեալ աշխարհին մէջ խօսքերուն զօրութիւնը մէջ ինչպէս՝ ովքեր մտքէ տան իրենց մեղքերնուն վրայ : Խոստովանք : Մեղաց թողութիւն :

ՀԵՏԵՒԵԱԼ երեկուանը Գամարիս տիկինը և տղաքը նորէն մէկտեղ ժողվըռվեցան, և ուրիշ կերպ խօսակցութիւն կընէին Ապաշխարութեան վրայ, ինչպէս իրենց սովորութիւնն էր ամէն իրիկուն, մինչև որ Գամարիս տիկինը լըմնցուց աս օգտակար նիւթին վրայով զրուցելու իր խօսքերը :

Մայր. Սիրելի՛ զաւկըներս, կը յուսամ որ մեր ջանք ըրած ատենը ո՛րն ըլլալը ճշմարիտ զղջումը գտնալու համար, բոլոր զրուցված խօսքերուն դուք ալ ականջ կըդընէքէր : Թէ և աս խօսքերը ձեզի զըւարճութիւն բերելու մը պէս չըլլան ալ մէկ պատ_

մութեան մը ըրածին պէս , սակայն ասոնք հասարակօրէն շատ պիտանի են՝ մէկ պատմութեան մը պիտանի ըլլալէն աւելի : Զրուցած խօսքս ճշմարիտ ասանկ է՝ ա. հետեւեալ կարճ ու յայտնի պատճառին համար. Պատճառն որ , եթէ դուք մեղքեր-նուդ համար ճշմարիտ զղջում մը չըզգաք սրտերնուդ մէջը՝ և ան զղջումը դուրսէն ձեր վրայ ալ ցու-ցընելու ըլլաք նէ , ամենեւին չէք կրնար երթալ Երկինքը :

Աշկ. Մա՛յր՝ Երկինքին մէջը եղող հրեշտակները զղջում ըրած են մի :

Մայր. Ի՞նչ բանի վրայ անոնք պի-տի զղջան՝ Որդեակ : Միտքերնիդ չի՞ գար , որ երէկ իրիկուն ձեզի ըսի թէ՝ մէկը միայն իր մեղքին վրայ կրնայ զղջում ընել : Գիտէք որ՝ Երկինքի մէջի հրեշտակները ամենեւին մեղք չեն գործեր . և անոր համար չեն կըր-նար զղջում ընել : Միայն մեղքէ

համար մենք կրնանք զղջալ. միայն մեր ըրած մեղքերուն համար, միայն՝ Աստուծոյ ուզածին պէս մեր սուրբ չըլլալուն համար, և մեզի ընելու պարտք չեղած բանը ընելնուս հա-մար, կամ մեզի պարտք եղած բանը չընելնուս համար:

Աշկեր. Մա՛յր, ի՞նչ է աս քու զրուցածդ, ի՞նչ պիտի ըլլայ մեղքը, կուզեմ որ հասկըցունես:

Մայր. Ապրի՛ս աղջիկս, որ հար-ցուցիր դուն ասիկա. բարի՛, հիմայ զրուցեմ ասոր վրայ. որովհետև ա՛ն մեզի կրնայ օգնել, որով մենք աղէկ մը հասկընանք ետքէն թէ ի՛նչ է ճըշ-մարիտ զղջումը: Օրինակով պիտի հասկըցունեմ. Նայէ՛ սա ժամացոյցս. կէս ժամ գրեթէ առաջ է՝ երէկ ա՛ն նոյնչափ կամաց կերթարկոր. շա-բաթ մըն է՝ որ ասանկ սխալ կերթայ. և չեմ կրնարկոր գիտնալ՝ թէ ի՛նչ է ասոր պատճառը:

Աշկեր. Մա՛յր, կարծեմ շատ աղէկ

կը՛նես հրամանքդ՝ որ Գրիգորին տաս անիկա, որ ժամագործին տանի։

Մայր․ Չէ․ դիտցուք թէ ես հիմայ աս ժամացուցին քիչ մը բան խօսիմ, ու ջանամ ցուցընել իրեն իր պարտաւորութիւնը՝ որ շիտակ երթայ։

Նորոգ․ Մա՛յր՝ ինտո՞ր ատիկա մէկ շիտակ բան մը ինքիրմէն կրնայ ընել։ Ժամացոյցը ոչ շիտակը գիտէ՝ ոչ ալ սխալը։

Մայր․ Ճշմարիտ է տը՛ղաս ատ զըրուցածդ․ ի՞նչու որ ժամացոյցը ոչ կըրնայ խորհիլ՝ ոչ ալ կրնայ իմանալ․ անիկա բանական հոգի չունի։ Ընկարելի բան է անոր հասկըցունելը՝ թէ ի՛նչ է շիտակը՝ ու ի՛նչ է սխալը։

Գրիգոր․ Կեցցե մայր՝ հրամանքիդ բան մը պիտի հարցունեմ․ Շատ անգամ կերեւայ որ շուն մը խո՛րհուրդ կընէ զանազան բաներու վրայ․ անիկա չի՞ գիտեր մի՝ մա՛յր, աղէկ ընելը ու գէշ ընելը․ ուրեմն կրնա՞յ մի անիկա զղջալ իր ըրած մէկ բանին վրայ։

Այո՛ . կարծեմ թէ չէ՞ Գրիգոր .
դուն շունի մը կրնաս որ հասկըցու-
նես թէ՝ այս ինչ բանը պիտի չընէ ,
կամ ուրիշ մէկ բան մը պիտի ընէ .
և ան բանին թէ որ ինքը անհնազանդ
գտնըվի նէ՝ կըպատժըվի ։ Ինչ որ մէկ
շուն մը առեն առեն ծեծ ուտէ կա-
տու մը հալածելուն համար՝ որն որ իր
հետը նոյն տանը մէջ կըբնակի , ալ
վերջը անիկա ան բանը ընելէն ետ
կըկենայ , և անոր հետ սիրով կըվար-
վի ։ Ինքը ցաւ մը կիմանայ իր ծեծ
կերած ատենը , և ան ծեծին վախը
կըզգուշացունէ զինքը կատուն հալա-
ծելէն ։ Բայց անիկա իր ըրած բանը
միտքը բերած ատենը մէկ տրտմու-
թիւն մը չունենար իր ներսիդին ։ Ա-
նիկա չիմանար՝ որ իր ըրածը յան-
ցանք էր , և ան՝ որ ինքը մեղադրը-
վելու արժանի է ։ Իսկ աս բանս բնա-
կանապար ճշմարիտ է ուրիշ ամէն ա-
նասուններուն վրայով . ինչու որ ա-
նոնք կարող չեն՝ որ հասկընան թէ

Ո՞րն է աղէկը, և ո՞րն է գէշը ։ Ասոր համար բոլորովին աննըման են մարդոց՝ կնիկներուն՝ և տղաքներուն ։ Թէ որ դուք ամէն կերպով աշխատիք ալ՝ որ կարենաք անոնց սորվեցունել քիչիճիկ մը Աստուծոյ վրայ կամ Աստուածաշունչին վրայ, բոլոր ան աշխատութիւնները պարապ են ։ Անոնք բան մը չեն գիտեր Աստուծոյ վրայով, կամ պա՛րտաւորութեան վրայով, Երկնքի՝ կամ Դժոխքի վրայով ։ Ասոր համար անոնք մեղք չեն կրնար գործել, և հետևապէս չեն ալ կրնար Զղջում կամ ապաշխարանք ընել ։

Դօքթօր. Այո՛, ես ամենևին առաջ չէի մտմտացեր աս կերպովը՝ որ հիմայ կը խորհիմ, թէ մենք ո՛րչափ տարբեր ենք անասուններէն. քանզի մենք կրնանք գիտնալ ո՛րն է աղէկը՝ և ո՛րն է գէշը ։

Նաղէա. Այո՛, սաստի՛կ կուգայ ինծի՝ որ երբեմն զուցէ շատ գէշ մարդիկները շունի մը նման ըլլալ պիտի ուզեն ։

Սօֆր․ Ինչո՞ւ ատանկ կուգայ քեզի աղջիկս ։

Ասպետ․ Քանզի մէկ մարդուն իր ըրած յանցանքին վրայ տրտում ըլլալը այնչափ գէշ կուգայ՝ որ ինծի կերևայ թէ, անոնք որ շատ գէշ բան մը կընեն նէ՝ կարելի է որ պիտի ուզեն անասունի մը պէս ըլլալ, որ երենք իրենց սրտերնուն մէջ տրտմութիւն չըզգան, և չի զղջան իրենց յանցանքին վրայ ։

Սօֆր․ Ա՛խ աղջիկս․ շատ գէշ մարդիկներ ատանկ ըսածիդ պէս ըլլալ ուզեցին՝ որ մեղքերնուն վրայ չի խորհին, բայց պարապ տեղը ։ Անոնք որ մեղք կըգործեն՝ պէտք է որ իրենց մեղքերնուն վրայ մտմտան ։ Ու թէ որ իրենք աս աշխարհիս մէջ ան ըրած մեղքերնին չի մտմտալու՝ և անոնց վրայ անհոգ ըլլալու ճամբայ մը գտնան ո՛ և իցէ կերպերով, բայց հանդերձեալ աշխարհին մէջը հարկաւ ան մտմտուքը պիտի ունենան ի-

րենք ։ Ընտեղը՝ անոնք որ իրենց մեղքերուն վրայ չի զղջացած՝ և իրենց յոյսը Տէր Յիսուս Քրիստոսին վրայ չի դրած մեռած են նէ, ա՛լ պիտի մտմըտան բոլոր իրենց մեղքերնուն վրայ, և ան մեղքերը վրանին առնելնուն պատճառաւ իրենց յիմար ու յանցաւոր ըլլալնուն վրայ ։ Անոնք աս բանիս վրայ ամէն իժիր պիտի մտմըտան ։ Ասոր վրայ պիտի մտմըտան՝ ներսիդիննին էվելօք կսկիծ իմանալով ։ Իրենց ըրած բաներուն վրայ պիտի դառնան նայլին ամօթով ու դողով ․ և ան իրենց գլխուն գալու ու քաշելու բաներուն վրայ պիտի նայլին անպատմելի յուսահատութիւնով մը ։

Մտմըտացէ՛ք դուք աս բաներուն վրայ սիրելի՛ զաւկըներս ․ ու երբոր աս կերպով մենք առաջ երթալով՝ աղէկ մը ճանչնալու կըլլանք մեղքին ի՛նչ ըլլալը նէ, մտքերնիդ բերէ՛ք որ դուք մեղաւոր էք ․ որ անկէ ետև չէք կրնար մեղքերնուդ վրայ խորհելէն

ետ կենալ․ և թէ որ դուք աշխատիք՝ որ աս կեանքերնուդ մէջ ան մեղքերը մոռցրվին, և այնպէս թէ որ ան մեղ-քերնուդ վրայ ամենևին զղջում չը-նէք նէ, ձեր մեռնելէն ետքը՝ ա՛լ ան մեղքերուն վրայ մտմըտուքի մէջ պի-տի ըլլաք մէկ հոգևոր տըտմութիւնով մը, որուն ինչպէս ըլլալը դուք հիմայ չէք կրնար իմանալ։ Դուք հիմայ չէք կրնար խորհիլ թէ ինտո՛ր աղէտալի և վշտալից պիտի ըլլայ ան մտմըտու-քը։ Շիտա՛կ զրուցեց Գրիգոր, որ մենք շատ տարբեր ենք անասուննե-րէն․ ինչու որ մենք կրնանք դիտնալ ի՛նչ աղէկ է՝ և ի՛նչ գէշ է։ Նաև շատ տարբեր ենք անոնցմէ, որ մենք ա-նմահ հոգի մը ունինք, որ մեղքին պատճառաւը յաւիտեանս թշուառ ըլլալու ընդունակ է՝ և էվելօք սոս-կալի նեղութիւններու դիմանալու։ Անասունները կրնան դիմանալ մեծ մեծ մարմնաւոր պատիժներու, ա-նանկ ալ մենք․ բայց ինչ օգուտ․

ան զանազան մարմնաւոր նեղութիւնները բնաւ չեն կրնար համեմատիլ հոգիին քաշելիքին, թէ որ անիկա հանդերձեալ աշխարհը երթալու ըլլայ իրեն աններելի ու անապաշխար մեղքերովը նէ :

Աստուած է՝ որ սաստիկ շատ տարբեր ըրաւ ձեզ անասուններէն. ինչն է՝ որ ձեզի բանական հոգի տըւաւ. և ինչն է՝ որ ըրաւ ան հոգին ընդունակ իմացողութեան թէ ո՛րն է աղէկ, և ո՛րը՝ գէշ. և գիտնալու, որ երջանիկ պիտի ըլլաք՝ երբոր աղէկը ընէք, և թշուառ պիտի ըլլաք՝ երբոր գէշը ընէք նէ :

Ասանկ ձեր կարող ըլլալովը աղէկն ու գէշը ճանչնալու՝ ան երջանիկ զգացումներուն հետ մէկտեղ որ դուք կունենաք ձեր աղէկ կիրքերնուդ ու ըրածներնուդ վրայ նայելու առեննիդ նէ, և ան թշուառական զգացումներնուդ հետը՝ որն որ կունենաք երբոր գէշ կիրքերնուդ և

գործքերնուդ վրայ կրնայիք , առ ամէնուն վրայ խօսելով՝ մէկ խօսքով , կրնայ ըսվիլ թէ դուք մէկ խղճմըտանք մը ունիք ։

Գրիգոր · Մա՛յր՝ պզտրիկ տղաքներն ալ խղճմտանք ունի՞ն մի ։

Մայր · Տղա՛ս՝ շատ դժուարին բան է գիտնալ ճիշտ ան ժամանակը , երբոր անոնք պիտի առաջ կըզգան թէ իրենց ըրածը կամ աղէկ է՝ կամ գէշ ։ Ասանկ զգացումներ կրնան ունենալ անոնք՝ իրենց վարքին վրայ յայտնի կերպով անոնք ցուցընելէն շատ առաջ ։

Բայց ձեզի ալ ինծի ալ հարկաւոր չէ գիտնալ բոլորովին պզտի տըղոց խղճմտանքներուն վրայ ։

Թէ որ ես կրնամ հասկըցունել ձեզի՝ թէ ինչ է բուն ձեր խղճմըտանքը , և ան՝ որ դուք Աստուծոյ առջևը մեղաւոր մըն էք ։ Եւ թէ որ ես ձեզի մեկնելու ըլլամ՝ թէ ինչ է ճշմարիտ զղջումը , և ան զղջումը սրտերնուդ

մէջը զգալը ցուցընեմ ձեզի ։ Թէ որ ասանկ՝ Հոգւոյն Սրբոյ օգնութիւնովը կրնամ ձեզի ցուցընել ձեր յանցանքը՝ ու գլխունուդ գալու վտանգը , և ձեզ յորդորելու ըլլամ՝ որ յոյսերնիդ Քրիստոսի ձեր մէկհատիկ փրկիչին վրայ դնէք ․ ամենևին հոգս չի պիտի ըլլայ՝ Թէ կրնա՞մ պատասխան տալ Գրիգորին ինծի ըրած հարցմունքին պէս բանի մը , Թէ չէ ։

Բոլոր ասանկ խիստ ու դժուարին նիւթերը Աստուծոյ կըձգեմ , որ ինքը ստեղծեց պզտի տղոցը հոգիները , և ինքը գիտէ ինտո՛ր գործածելը անոնք մեծ մեծ ողորմութիւններով և առաւել ճիշդ արդարութիւնով ։

Ա՛ղէսա , ես քեզի հիմայ աս պիտի հարցունեմ ․ դուն անատենը երբոր ինծի անհնազանդութիւն ըրիր՝ համարդ չի սերտելով նէ , ներսիդիէդ ատանկ զգացում մը ունենալու՝ և անով անհնազանդութիւն ընելու պատտաւորեցի՞ր մի ինքիրմէդ ։ Ու կամ

եռքէն առ անհնազանդութեանդ հա-
կառակ տարբեր կերպով ուրիշ զգա-
ցում մը և ներգործութիւն մը կըցուցր
մի ունենալ ներսիդիդ, որով և հը-
նազանդ աղջիկ մը ըլլալ, և համ-
բերէ կենալ՝ ու սորվիլ համարդ:

Նազէլա. Կարծեմ մայր, առ եռքէ
բսածիդ պէս թէ որ ուզելու ըլլայի ը-
նել՝ կրնայի:

Մայր. Ընանկ է նէ՝ ճիշդ սըրն որ
ուզէյիր և ինտոր որ յօժարեցար ը-
նել նէ՝ ըրիր նոյն բանը. կամ թէ՝
ինքիրմէդ դուն ազատաբար ներգոր-
ծութիւն մը ունեցար. ուրեմն ասկեց
կերևայ որ՝ դուն մէկ ազատ ներգոր-
ծող մըն ես ինքիրմէդ:

Նարմոգ. Մայր՝ ես ալ մի ազատ ներ-
գործող մըն եմ:

Մայր. Տեսնանք եթէ դուն ալ ես
մի. Բեր ինծի տա գիրքը: ( Նարմոգ
Եղա՝ Գիրքը կը Տորը Բերա—):

Տես ինչպէս որ քեզի գրուցեցի նէ՝
դուն ըրիր. դուն ինծի հնազանդե-

ցար՝ և մէկ աղէկ տղայ մը եղար։
Հիմայ կըրնայի՞ր մի դուն ինծի ան-
հնազանդութիւն ընել ։

Նըրմոգ. Այո՛ անանկ կըկարծեմ մայր. ժամանակ եղեր է որ՝ հրաման-քիդ անհնազանդ գտնըվեր եմ. և թէ որ հիմայ ալ ուզելու ըլլայի, կըրնա-յի անհնազանդ ըլլալ հրամանքիդ ։

Մայր. Բայց Նըրմոգ, թէ որ ես քեզի զըռուցելու ըլլայի՝ որ դուն դէպ ՚ի վեր ձեռունը թուչիս, կըրնա՞ս մի ըլ-նել անիկա ։

Նըրմոգ. Ոչ մայր. ինչու որ ես փետուր չունիմ։

Մայր. Նու պիտի խորհի՞ս դուն ներսիդիեդ՝ որ առ բանը չընելուդ համար պատիժի կամ յանդիմանու-թեան արժանի ես ։

Նըրմոգ. Ոչ՝ չի պիտի խորհիմ։

Մայր. Բայց թէ որ քեզի զըռուցելու ըլլամ՝ որ ելլաս վերի սենեակը եր-թաս, դուն ալ չընելու ըլլաս նէ ան, պիտի խորհի՞ս ներսիդիդ՝ որ դուն մեղադըրըվելու արժանի եղար ։

Արմոզ․ Անշուշտ ասանկ պիտոր խորհիմ ես․ ինչու որ կրնամ վեր երթալ՝ թէ որ ուզեմնէ․ բայց թռչիլ չեմ կրնար՝ թէ որ էվելօք ալ ջանամ որ ան բանը ընեմ ։

Այր․ Սուրեմննայէ տղաս, որ դուն ալ մէկ քանի բաներուն մէջ ազատ ներգործող մըն ես, բայց չէ թէ ուրիշ կերպ բաներուն մէջ ։

Ու վարը պիտի խօսինք քիչ մը էվելօք՝ ատ ձեր ազատ ներգործող ըլլալուն վրայ ։



# ԳԼՈՒԽ Գ.

---

Նշմար գործաւորութեան։ Մերժէին ինչ ըլլա-
լուն հաստատութիւնը Քէյմալ։ Ընտանի
երջանկութիւն։ Տուն մը կամ ընտանիք մը
ոգեւորէ առնենայ գլուխ մը՝ և օրէնսներ։ Ինչ
է անձնասիրութիւնը։

Մայր. Շատ աղէկ՝ տղաքս, կը-
տեսնամ որ դուք ամէնքդ ազատներ-
գործութիւն ունիք։ Այս ձեզի զըրուցե-
ցի որ՝ աս առտու ժամը երկուքին աս-
տեղ իմ քովս դաք. և դուք շատ հոգ
տարիք ան նոյն ժամին հոս գտնըվիլ։
Հիմայ աստեղ շատ կեցա՞ք մի դուք։

Գրիգոր. Ոչ մայր. միայն թէ քա-
նի մը րոպէ։

Մայր. Բայց կը՞նայի՞ք՝ որ ձեր առ-
ջի տեղը կենայիք՝ ու ինծի չի գայիք.
և ինծի անհնազանդ գտնըվէիք՝ թէ
որ անանկ ընել ուզէիք նէ։

Յակոբ. Իմ սիրտս քիչ մը ուզեց՝
մայր, որ իմ տեղս կենամ քիչ մը ա-

տեն , ու տեսնամ ան պատկերները՝ որ Մարիամ ինծի պիտի ցուցընէր ։

Մայր . Հապա ինչո՞ւ չըրիր անանկ . Թէ որ դուն ուզէիր ան բանը ընել՝ կրնայիր անանկ ընել ։

Նուարդ . Այո՛ . բայց չուզեցի որ ընեմ ։

Մայր . Ինչո՞ւ համար չուզեցիր աստեղ գալէդ էվելի Մարիամին քովը կենալ ։

Նուարդ . Մտմըռտացի՝ որ հրամանքդ պիտի սրդողիս ինծի , և որ՝ ես ալ ետքէն պիտի խորհիմ ներսիդիս՝ որ գէշ բան մըն էր հրամանքիդ հնազանդ չըլլալս ։ Ասկէց 'ի զատ , թէպէտ սիրտս կուզէր ան պատկերներն ալ տեսնալ , բայց շատ ուզեցի հրամանքիդ խօսքը մտիկ ընել ։

Մայր . Ահա ասոր պէս դուք ամէնքդ շատ անգամ կըլլայ որ կուզէք բան մը ընել . և նոյն ժամանակը կըմոռնաք թէ պէտքը չէ՛ր՝ որ ան բանը ընէիք դուք ։ Կամ թէ կըլլայ որ՝ չէք

ուզեր դուք առանց մէկ բան ընել, և ետքը կըխորհիք թէ՝ պէտք էր որ ան բանը ընէիք՞ Այս բաները մտմըտալէն ետքը՝ վերջապէս կըհաստատէք ան երկու կերպ բաներէն որն որ պիտի ընէք նէ ։ Եթէ որ աղէկ բանը ընելու ըլլաք՝ անիկա ըրած առեննիդ երջանկութիւն մը կիմանաք ներսիդինիդ · բայց թէ որ գէշը ընէք՝ թշուառութիւն մը կըզգաք ներսիդինիդ ։

Եղիշա · Այո՛, խնտո՛ր աղէկ մը մեր ներսի զգացումներուն վրայով տեղեկութիւն ունիմ ։ Ատ հրամանքնիդ մեզի զըուցածին պէս ճիշտ են հարիւր անգամ զգացում ունեցեր եմ ։

Պետրոս · Անանկ ալ եմ ։

Եղնոգ · Ես ալ, որ երբ սիրտս կուզէր ծառն ՚ի վեր ելլալ թռչուններուն բոյնը, ու գիտէի որ պէտքը չէ ան բանը ընել, որովհետև մայրս հրաման չունի ։

Անոյր · Դուն ծառն ՚ի վեր ելա՞ր մի ։

Երուանդ · Զելայ, և անկէ ետև շատ ուրախութիւն զգացի ներախիղիս՝ որ հրամանքիդ անհնազանդ չէի գտնըվե֊ցայ :

Մայր · Կըտեսնաքկոր տղա՛քս, որ շատ բաներու մէջ դուք անձնիշխան ու ազատակամ էք : Դուք գիտէք ո՛րն է աղէկը՝ և ո՛րն է գէշը · և դուք ինչպէս որ ուզէք՝ կրնաքկոր ընել, թէ աղէկ՝ և թէ գէշ : Հիմայ պատաս֊խան տուէք ինծի աս ըրած հարց֊մունքիս : Երբոր դուք ներսխիղճնուդ պէտք եղածին պէս խորհեցաք՝ և ա֊ղէկը ըրիք, ու անկէ ետև երջանկու֊թիւն որ զգացիք, կամ ինչպէս որ պէտք էր նէ չի խորհեցաք՝ ու յան֊ցանք ըրիք, և անկէ ետքը թշուա֊ռութիւն որ զգացիքնէ, դուք չիմա֊ցա՞ք մի՝ որ ճիշտ ձեր սրտին ուզածին պէս էր ըրածնիդ :

Տղայք · Այո՛, Այո՛, Այո՛ :

Մայր · Ձեզի անանկ երևցա՞ւ մի, որպէս թէ մէկ մարդ մը կամ մէկ բան

մը ձեզ պարտաւորելու կամ ստիպե-լու վրայ էր՝ այնպէս ընել կամ խոր-խորհիլ, ինչպէս որ ըրիք :

Գրիգոր. Ոչ մայր. միայն թէ եր-բեմն ինծի կերեւայ՝ որ շատ դժուարին է պէտք եղածին պէս խորհիլ ներսի-դիս, ու անանկը ընել :

Մայր. Ո՛րչափ շատ դժուարին ը-նել տրուողը իր բանն է :

Գրիգոր. Մա՛յր՝ ատիկա դժուար հարցմունք մըն է : Երբոր ես աղէկ տղի մը պէս կըխորհիմ՝ և կըսիրեմ ձեզ, ու կուզեմ ձեր կամքը ընել՝ և սիրել Աստուածն ու [illegible], ու կու-զեմ որ անոնց ալ աղէկ ընեմ, անա-տեն ա՛լ շատ դիւրին է ինծի աղէկը ընել : Բայց երբեմն ատանկ չեմ խոր-հիր. կուզեմ որ իմ կամքս կատա-րեմ : Հոգ չեմ ըներ ամենևին ուրիշ-ներուն վրայով. և անատեն ինծի շատ դժուար է աղէկը ընել :

Մայր. Չէ՞ս մտմըտար որ, երբոր ատա՛նկ խորհելու ըլլաս նէ՝ մեղադ-րանքի արժանի ես :

Պօղիկոս · Կըխորհիմ · և աս խորհելովս թշուառ կըլլամ ես :

Մայր · Աղէկ՝ տղաքս · դուք ամէնդ գիտէքկոր ու կիմանաք ալ՝ որ դուք Ազատակամ էք :

Խելքերնիդ ալ կըհասնիկոր՝ շատ բաներու նայելով թէ ո՛րն է աղէկը , և ո՛րն է գէշը : Ա.է որ դուք խորհիք՝ ու աղէկը որ ընէք , ատ բանը ձեզմէ կընէքկոր ազատ կամքով : Ու թէ որ խորհիք՝ ու գէշ բան մը ընէք , ա՛ն ալ ձեզմէ կընէք ազատ կամքով : Երբոր դուք կըխորհիք՝ ու աղէկը կընէք , ձեր խղճմտանքը բարեհաճ է անատեն · և ան պատճառաւ դուք ալ երջանիկ էք : Բայց երբոր գէշ բան մը կըխորհիք՝ ու մեղք կընէք , խղճմտանքնիդ դատախազ կըլլայ ձեզի անատեն · և ան պատճառաւ դուք թշուառ կըլլաք :

Հիմայ կըտեսնաքկոր՝ որ դուք մեղաւոր էք եղեր : Ինչու որ շատ անգամ խորհեցաք՝ ու մեծ մեծ յան_

ցանքներ գործեցիք ։ Ձեզի պէտք չեղած բանը ընելը խորհեցաք՝ ու ըրիք . և ձեզի պէտք եղած բանը ընելը չի խորհեցաք՝ ու չըրիք ։

Աշկ. Մա՛յր, ամէն մարդ ալ մեղաւո՞ր է մի ։

Մայր. Այո՛ աղջիկս, ամէնն ալ. քանզի ամէնն ալ մեղք գործած են . պէտք է ան ամէնուն ալ՝ որ իրենց մեղքին վրայ զղջան, և յուսերնին Քրիստոսի վրայ դնեն՝ որ իրենց մեղքերուն թողութիւն ըլլայ և անկէ ետև փրկութիւն ։

Բայց ես կուզեմ որ՝ դո՛ւք, սիրելի՛ տղաքս՝ ուրիշներուն վրայ չի մըտմըտաք սա մասին մէջ, միայն թէ ինքըզինքներնո՛ւդ վրայ ։ Ես կուզեմ որ՝ դուք մտմըտաք՝ ու իմանաք թէ մեղաւոր էք . ինչու որ եթէ սա բանը ձեր վրայ չի մտմըտաք՝ դո՛ւք չէք ուզեր մեղքերնուդ վրայ զղջալ, ու փրկութեան համար Քրիստոսի վրայ յուսերնիդ դնել ։

Գրիգոր. Այս գիտեմ որ՝ ես մեղք գործած եմ, և անոր համար ալ պիտի դատապարտուիմ. սակայն՝ մա՛յրիկ, կուզեմ որ աղէկ մը իմ դիտցածէս էվել հասկընամ թէ՝ ինչ է մեղքը։

Մայր. Ասիկա ես ձեզի էվելօք կատարելապէս պիտի բացայայտեմ հիմայ. բայց խօսած ատենս՝ կուզեմ որ դուք ամէնդ աղէկ ականջ կախէք ինչ որ ես պիտի զրուցեմ նէ։

Ինչ կըկարծես՝ Գրիգոր, որ կըպատահի մեր պզտիկ գերդաստանին, թէ որ ես քեզ՝ մէկալ տղաքը ու Մարիամը թող տամ՝ որ ուզածնիդ ընէք, և ձեր վրայ ես մէկ տեսակ կառավարութիւն մը որ չունենամ նէ։

Գրիգոր. Գիտեմ մա՛յր ինչ ըլլալը։ Անանկ պիտի ըլլայ ինչպէս որ ան օրը եղաւ, ո՛ր օր դուք մեր մօրաքոյրին Սարային տունը գացեր էիք, երբոր մենք այնչափ հակառակութիւն ըրինք և իրար անցանք՝ ու տակնու վրայ եղանք։

Սօֆիա . Ո՛ղջէ՛ Գրիգոր , բոլոր ա՛ս բաները անոր համար եղաւ՝ որ դուն վարժապետ ըլլալ ուզեցիր ։

Սերոբ . Չէ՞ ատանկ չեղաւ Սօ՛ֆիա . առաջ դուն սկըսեցիր Մարիամին վրայ հրամայել . և Գրիգորը զըրու-ցեց քեզի՝ թէ ատ կերպ ըրած բանը յանցանք է ։

Մայր . Կեցէ՛ք տղաքս . դուք գի-տէք՝ որ ես տուն գալու ատենս ձեր ըրած գործքերը քննեցի , ու քանի մը շաբաթ առաջ բանին ինչ ըլլալը իմացվեցաւ ։ Պէտքը չէ որ նորէն ան բանը յայտնի ընենք ։ Ինծի ցաւ կըլ-լակոր՝ որ դուք տակաւին ատ բանին վրայով հակառակութիւն ընելու յօ-ժարութիւն մը ունիք ։ Հիմայ ատ բանը կըցուցընէ ա՛ս ատենն ալ՝ թէ ինտո՛ր հարկաւոր բան մըն է՝ որ մէկ տուն մը գլուխ մը ունենայ , և որ՝ ան գլուխը պէտք է որ կառավարէ ան տունը՝ և կարգին պահէ անիկա ։

Գրիգոր . Մա՛յր՝ ես աս բանին վրայ

Կըխնդամ, որ հրամանքդ կըկառավարես մեզ ամէնքս ։ Շուտով մենք էվելօք խռովութիւն պիտի ունենայինք մէջերնիս՝ թէ որ հրամանքդ մեզ չի կառավարէիր նէ ։

Մայր․ Ի՞նչ բանը պիտի պատճառէր այս խռովութիւնը ։

Գրէգոր․ Ա՛յ բանն որ հրամանքերդ գացած օրը պատճառուեց նէ՝ ճիշդ նոյնը ։ Մ՚ենք իրարու հետ չի պիտի միաբանութիւն ընենք․ ինչու որ մէկը պիտի ուզէ մէկ բան մը ընել, և մէկալը՝ մէկ ուրիշ բան մը ։ Կըվախնամ որ ամէն մէկը պիտի ուզէ՝ որ կառավարէ ուրիշ մնացածները․ և ատանկով կարգ կանոն չի պիտի ըլլայ, հապա ամէնն ալ անկարգութեան մէջ պիտի ըլլան ։

Մայր․ Օ՛ւ կընէրս, այս բանին ճշմարիտ պատճառը այս պիտի ըլլայ որ՝ ամէն մէկը կուզէկոր ինքըզինքը առաջ դնել՝ կամ իր երջանկութիւնը, և մէկալ մնացածներուն վրա-

յով կամ քիչ մը կըհոգաւոր , կամ ամենևին հոգը չըլլարկոր ։

Գիտցուք թէ՝ միշտ ամէն օր ես մի֊այն խորհելու ըլլամ իմ անձիս եր֊ջանկութեանը վրայ , և ձեր մխիթա֊րութեանը ու ազէկութեանը վրայով որ ամենևին հոգ չընեմ նէ՝ ի՞նչ պի֊տի պատահի արդեօք ձեզի ամէնուդ ։

Ներսէս · Մ՞ն անկէ ետև ես չեմ կար֊ծեր՝ որ կունենանք առտըվան նախա֊ճաշիկը՝ կամ ցորեկվան հացը՝ կամ իրիկվան կերակուրը վայելուչ կեր֊պով ։ Ու երբոր լաթերնիս պատըռ֊տի նէ՝ ո՞վ պիտի կարէ անոնք ։

Նշան · Իրաւ է · նաև մեզի համար պէտք եղածները ո՞վ պիտի ընէ · լա֊թերնիս լըւայ ու չորցունէ ։

Գրիգոր · Նաև ո՞վ պիտի մեզ դըպ֊րատուն խրկէ , ու մեզի համար գիր֊քեր պիտի առնէ , և մեզի Աստուածա֊շունչին վրայով տեղեկութիւններ պիտի տայ ։

Մայր. Բայց գիտցուք թէ՝ ալ ես ձեզի թող տամ, որ ամէն մէկերնիդ ձեր ուզածին պէս ընէք. ու չի պահանջեմ ձեզմէ թէ՝ որ բանն որ մեր բոլոր ընտանեաց վայելչութեանը ու աղէկութեանը կընայի նէ, անիկա ընէք դուք:

Գրիգոր. Մա՛յր՝ ես կըվախնամ որ մենք հիմակվան եղածնուս կերպէն շատ տարբեր մէկ ընտանիք մը կըլլանք անտատեն:

Մայր. Խրատցընէ՛ անանկ կըլլանք. անտատեն շուտով կիմանաք դուք՝ թէ ինտո՛ր հարկաւոր է՝ որ մէկ տանը վայելչութեանը համար պէտքը չէ որ ամէն մէկը իր անձին օգուտին միայն նայի: Շուտով կըհասկընաք դուք՝ որ ամէն մէկուն ընածը պէտք է որ բոլորին աղէկութեանը համար ըլլայ: Նա՛ ալ պիտի տեսնաք՝ որ մէկ բան մը թէ որ մէկն որ կըխորհի իրեն մասնաւո՛ր բարութեանը համար, որ ան բանը բոլորին աղէկութեանը համար

չէ՝ հապա անոնց դէմ է, նոյն բանը պէտք է որ ինքը մէկ դի ձգէ. և թէ որ կամովին անիկա մէկ դի չի ձգէ նէ՝ մէկալները բռնութեամբ ձգել պիտի տան իրեն այն բանը։ Պիտի տեսնաք որ՝ պէտք է երբոր մէկ տան մը մէջ կառավարութիւն ըլլայ՝ ու կանոններ կամ օրէնքներ. որ անոնց պիտի հնազանդին ամէնքը. և պատիժ ալ պիտի ըլլայ անոնց համար, որ օրէնքը չեն բռներ. և մէկ գլուխ մը պէտք է ըլլալ, որ նայի թէ օրէնքին հընազանդ ըլլան, և օրինազանցները պատժըվին, ու աստանկով ընտանեաց երջանկութիւնը և բարեկարգ կանոնը պահվի։

Պօղոս. Այո, ես առաջ բոլոր աս բաներուն վրայ ամենևին չէի խորհեր. հիմայ կը տեսնամ կոր՝ որ ինչ մէկ անձնասէր ու անհնազանդ տղայ մը եղած եմ ես շատ անգամ, և ապչայի հրամանքիդ ներողութիւն տըւած եմ իմ դէշ վարմունքովս։

Սոկր. Օմուտկս, ուրախ եմ քեզմէ սասանկ խօսքեր լսելուս վրայ. ես կը ցանկամ՝ որ դուք ամէնքդ ալ կարող ըլլաք տեսնալու՝ և էվելօք իմանալու ձեր գիտցածէն աւելի՝ թէ անձնասիրութիւնը և անհնազանդութիւնը ի՞նչ գէշ բան է ու մեղք է։

Նիկոդ. Ամա՝ ի՞նչ է անձնասէր ըլլալը։

Սոկր. Միտքդ չէ՞ գար ան երէկվան բանը, որ երբ Նղիսան քեզմէ կտոր մը խնձոր ուզեց նէ՝ դուն անոր քիչ մը չի տուիր։

Նիկոդ. Ողէկ, բայց ի՛նքն ալ առջի օրը իր ունեցածէն կտոր մը չէ տուաւ ինծի։

Սոկր. Ուրեմն դուք երկուքդ ալ անձնասէր էք եղեր, և երկուքդ ալ գիտէք թէ սասանկ ընելը ինչ կըցուցընէ։ Նորբօր դուք ուզելու ըլլաք մէկ աղէկ բան մը ընել միայն ինքըզինքներնուդ համար, կամ միայն ձեր միխթարութիւնն ու վայելչութիւնը

նայելու ըլլաք , և չի կամիք կամ չի ցանկաք որչափ ու կընաք նէ՝ էվելօք նոյն բարութիւնը ուրիշներուն ալ ընել , և անոնց ալ ձեր անձերնուդ ըրածին պէս օգտակար ու երջանկաւէտ բարիք ընել նէ , գիտցած եղիք որ՝ դուք անձնասէր էք ։ Դուք ամէնքըդ կըհասկընաք աս զրուցածներս ․ բայց ես կուզեմ աս բանին վրայով ձեզի էվելօք բացատրութիւն մը ընել մեր հետևեալ խօսակցութեանը մէջ ։



# ԳԼՈՒԽ Գ.

*Անձնաւորութեան վրայով ով եվելօք բաղդա-տրութիւն մը ։ Անձնաւորութեան շարժա-ռիթները ։ Անձնաւորութեան տեսակները , որ Աստուծոյ էականութեանը մէջ կենտրո-նացուցիչն է ։*

Սոկր . Տիրդաքս՝ երէկ մենք անձնաւորութեան վրայ խօսեցանք . բայց հիմայ պէտք է որ աշխատինք եվելօք աղէկ մը քննելու անձնաւորութեան ճիշդ ըլլալը , որ սաանկով եվելը պայծառ պիտի տեսնանք մեղքին ճիշդ ըլլալը ։

Գրիգո՛ր , դուն բան մը զրուցած կամ ըրած ատենդ շատ անգամ չե՞ս մի խորհիր՝ թէ ի՞նչ պատճառի համար ան բանը կըզրուցես կամ կընեսկոր ։ Մինկա խօսելովդ կամ ընելովդ չե՞ս մի ուզեր որ՝ մէկ բան մը առնես իբր վարձք կա՛մ քեզի համար կամ ուրիշներուն ։

Պէրթօլ․ Ա՜յ մայր․ երբոր մէկալ առտու ան գիրքերը կարդալ գրատունին մէջը շարած տեսնես այնչափ շուտով կաշխատէի նէ, անտանէնը հրամանքիդ ինծի զրուցած խոստմունքը կըմոռնայի ։ Քանզի հրամանքդ ինծի ըսիր, թէ որ կէս ժամու մը մէջ ընելու ըլլամ անիկա, ես ձեր հետը պիտի առնէք կառքով տեղ երթալու ։ Ու իմ անանկ շուտով գործելուս պատճառը ան էր, որ ես շատ ուզեցի ան զըւարճալը կառքին մէջը նստիլ զբօսանքի ելլալ ։

Ռօյզ․ Դուն ալ Ա՛դելա, ինչու համար այնչափ շուտով հուսեցիր գուրպան աս օրհասրակին ։

Ադէլա․ Անոր համար որ՝ հրամանքըդ ինծի զրուցեցիր որ՝ ան պզտի աղքատ աղջիկը՝ որուն համար որ ես կըհուսէիկոր ան, շատ շուտով կուզէր ինքը ան գուրպան․ ես ալ ուզեցի որ կրցածիս չափ շուտով լմընցունեմ անիկա ։

Մայր · Աւրեմն ան բաները որոնց համար որ բան մը կընենք, կամ ա֊նոնց համար բան մը ընելէն ետ կը֊կենանք նէ, կըսվին շարժառիթներ :

Թէ որ մենք բան մը խօսած կամ ըրած ատեննիս գիտնանք որ՛նք ըլ֊լալը ան բանին շարժառիթները նէ, դիւրութեամբ կընանք հետեւցունել ու ըսել թէ՝ մենք անձնասէր ենք կամ չենք ան բանը խօսելունիս կամ ընելունիս :

Թէ որ ան պատճառները միայն ինքըզինքներնուս մէկ օգուտ մը ձեռք բերելու համար ըլլան, և թէ որ մենք կամք չունենանք՝ կամ ամենեւին հոգերնիս չըլլայ ուրիշներուն ալ աղէկութիւն ընելու նէ, անատեն մենք անձնասէր ենք :

Աղջիկ · Բայց մա՛յր՝ պէտք չէ՞ որ մեր անձին օգուտը ու երջանկու֊թիւնը փնտռենք :

Մայր · Իրաւ է աղջիկս, շիտակ է ատ, որ դուն սանկ պէտք է որ ընես՝

միայն թէ որ դուն ան բանը կուզես՝ որոնք կակալես քեզ երջանիկ պիտի ընէ, չէ թէ ճիշտ նոյն պատենը եր-ջանիկ՝ հապա միշտ ու միօրինակ երջանիկ. և չէ թէ սոսկ աս աշխար-հիս մէջը երջանիկ, հապա մինչև յաւիտեանս երջանիկ: Բայց թէ որ դուն քու երջանկութիւնդ ան կեր-պով ուզելու ըլլաս՝ որ ուրիշներուն աղէկութեանը արգելք ըլլաս, կամ թէ կրցածիդ չափ ծվելոք հոգդ չըլ-լայ՝ որ ուրիշները այնչափ բարութիւն ունենան՝ ու այնչափ երջանկութիւն վայելեն՝ որչափ որ դուն կը վայլես, անպատեն դուն քու սրտովդ ու գործ-քովդ անձնասէր ես:

Դուրեկոր. Մա՛յր՝ հրամանքդ ո՛րչափ աս բաները միտքս բացատրեցիր նէ, ես այնչափ կը վախնամ՝ որ մէկ անձ-նասէր տղայ մը ըլլայ: Կիմանամ թէ ինչ կը ցուցընեն ան շարժառիթ-ները. ու երբոր կը խորհիմ ան պատ-ճառներուն վրայ՝ որոնց համար որ

բան մը զրուցեցի կամ ըրի , պէտք է որ խոստովանիմ թէ ուրիշներուն բարութեանը համար միայն թէ քիչ մը հոգ ըրի , և. գրեթէ բոլորովին միայն՝ իմ աղէկութիւնս փընտըռեցի ։

Այր · Իրաւ ես զա՛ւակս · ես ալ կըվախնամ որ ամէն իժիր դուք սանկ կընէք · պէտք է որ ես ձեր քովը շատ համարձակ ըլլամ՝ տըղաքս , և. ձեզի զրուցեմ որ տակաւին չեմ կրնարկոր տեսնալ ձեզմէ մէկուն վրայ անանկ բնաւորութիւն մը ունենալ , որուն պէս Աստուած մեզմէ կըպահանջէ ։ Աստուած Սուրբ Գրքին մէջը կը-զրուցէ թէ՝ պէտք է որ մենք ուրիշ-ները մեր անձերնուս պէս սիրենք ։

Ո՜հ՝ իմ սիրելի՛ զաւակներս , երբ պիտի ըլլայ՝ որ դուք զգաք աս սէրը · երբ պիտի ըլլայ՝ որ դուք փնտըռէք ձեր ճշմարիտ երջանկութիւնը , ջանք ընելով՝ որ ուրիշներն ալ երջանիկ ընէք ։

Կըտեսնաք դուք՝ որ անձնասիրու-

Թիւնը ի՛նչ ախտեր առաջ կըբերէ նաև մեր պզտի գերդաստանին մէջը , Թէ որ ամէն մէկը՝ մանչ կամ աղջիկ , ջանայ իր ուզածը ընելու , և Թէ որ գլուխ չըլլայ՝ և ոչ օրէնքներ ։

Գրիգոր․ Ա՛յր , մէկ օր մը վարպետանիս դպրատունէն երկու իրեք ժամ որ հեռուցաւ՝ չէք գիտեր հրամանքնիդ Թէ ի՛նչ խառնակութիւն և խռովութիւն եղաւ անտեղ ։ Ա՛ն օրը մէկ շատ ցուրտ օր մը ըլլալով՝ տղաքը կրակարանին քովը բոլորեր էյին , ու մէկըզմէկ անանկ կըհրմըշտըկէյին , որ վերջը գըրեԹէ սկըսեցին կռիւ ընել ։ Ա՛ս քանի մէկ քանիները ըրին՝ որ չէ Թէ իրենք կրակին շատ մօտ ըլլալ կուզէին , հապա միայն Թէ մէկ ձանձրութիւն մը տան ։

Մայր․ Տը՛ղաս , ան ամէն մէկը որ կուզէր էվելօք կրակին մօտ ըլլալ , իրեն մասնաւոր մխիԹարուԹեանը կընայէր՝ ուրիշներուն հանգըստուԹեանը համար իր հոգը չըլլալով,

կամ հաստատակութեանը աղէկ ըլլալուն չի նայելով։ Այս ահա այն տղաքը անձնասէր եղան իրենց վարմունքովը ու գործքերովը, և այն գործքերը ըրին իրենց մեղանչական բնաւորութիւնը ու չարասէր բաղձանքը բերկրեցունելու համար։

Դիցուք թէ՝ սաանկ ալ մեր քաղքին մէջի բոլոր մարդիկը միօրինակ անձնասէր ըլլային, և օրէնքներ եդած չըլլար՝ որ անոնք բարեկարգութեան մէջ պահվէին։

Դիցուք թէ՝ անոնք ալ հակառակութիւն ու կռիւ ընելու ըլլային, ինչպէս որ ան տղաքը կրակարանին բոլորտիքը նստած՝ ըրին նէ. ամէն մէկը ջանար որ բան մը էվելօք ձեռք բերէ իր մխիթարութեանը ու հանգըստութեանը յարմար, կամ որ իր չար կամքը հաճեցունէ, և հոգը չըլլար աս բանին մէջ ուրիշներուն համար նէ, ո՛րչափ արդեօք անով մէկալ մնացածները թշուառական կըլլային։

Գրիգոր . Մա՛յր՝ իրաւ որ ես չի պի֊
տի ուզէի սանկ տեղ մը կենալ .
քանզի անիկա շատ գէշ մէկ տեղ մը
պիտի ըլլար ինծի մեր դպրատունէն
ելլելէ՝ ո՛ր ատեն որ վարժապետը հե֊
ռացած էր անկէց ։

Մայր . Տղա՛քս՝ հիմայ քիչ մը է֊
վելի մտմըտացէք դուք ։ Գիտէք թէ
աս կերպ բան մը Ճշմարիտ եղած էր
նաև աշխարհիս մէջի բոլոր մարդոցը
վրայ . դիցուք թէ մէկը չըզգուշանար
Աստուծոյ կամ մարդու վախովը անձ֊
նասէր ու մեղանչական շարժառիթ֊
ներով օրինակներ ձևացունելէն իր
մտքին մէջը ՝ և անոնք գործելէն , և
իր անձին համար ամէնէն մեծը ու
շատ աղէկը նայելու ջանալէն , ամե֊
նևին հոգը չըլլալով թէ՝ աս ընելովը
ինքը ո՛րչափ թշուառ պիտի ընէ իր
ընկերները ։

Գրիգոր . Մա՛յր՝ հրամանքիդ տունը
չեղած օրը մինչև անգամ մեր փոքրիկ
ընտանեացը մէջ ունեցած նեղու֊

Թիւններնուս կրնամ մակաբերել՝ Թէ որչափ խառնակութիւն ու Թշուառութիւն պիտի ըլլայ աշխարհիս մէջը ։

Մայր · Բայց պէտքը չէ որ կայնինք մենք աս խօսքին վրայ · իմ սա ըսածներս մոտիկ ըրէ ։ Մն ժողովուրդները՝ որ աս աշխարհիս մէջը կբընակին , Աստուծոյ ստեղծած բոլոր էակներուն մէկ պզտի մասն են ։ Բանզի որչափ ուրիշ աշխարհներ կան՝ որ բնակիչներով լեցուն են , որոնց համար որ Աստուած մեզի չէ գրուցեր ։ Գիտենք որ Երկինքը սուրբ ու երջանիկ բնակիչներով լեցուն է · Դըժոխքը չար ու Թշուառ բնակիչներով ։ Եւ հաւանական է որ՝ ան ուրիշ աշխարհներուն մէջն ալ հաւասարաւոր ու միլեօնաւոր ստեղծուածներէն շատ աւելի կան ։

Հիմայ դիցուք Թէ՝ բոլոր ան արարածները որ եղած են , ալ ասկէ ետև Աստուծոյ կառավարութեանը տակը չի կենան , հապա ամէն մէկը Թող

տըրվի իր ուզածին պէս ընելու՝ մէկ պատիժի մը վախ չի քաշելով ։ Նաև գիտցուք թէ՝ ամէն մէկը անձնասէր ու մեղք գործող ըլլայ էվելօք՝ ուրիշնե-րուն աղէկ ըլլալուն ու հասարակու-թեան բարութեանը չի նայելով ․ ոչ ալ հոգը ըլլայ՝ թէ ինքը ասանկով ուրիշներուն անիրաւութիւն ըրած կըլլայ ․ արդեօք ի՞նչ մէկ սոսկալի ու ընդհանրական թշուառութիւն մը պիտի ըլլայ անտանէն ։

Գրիգոր ․ Իրաւ որ ուրախ եմ՝ որ ատ կերպը չէ՛ հիմայ ։

Մայր ․ Դուն պատճառ ունիս զը-ւակս՝ ուրախ ըլլալու ․ դուն իրա-ւունք ունիս ուրախանալու՝ որ Ա-տուած մեր վրայ կըթագաւորէ ․ որ ինքն է բոլոր իր ստեղծած էակներուն գլուխը ․ և որ՝ իր օրէնքները սուրբ են՝ արդար և բարի ։ Անիկա չունի մէկ մեղանչական բնութիւն մը ․ և ոչ անձնասիրութիւն ։ Անիկա կըցան-կայ՝ որ իր արարածները երջանիկ ը

նէ ։ Անիկա մեզի ամէն ատեն հազա-րաւոր կերպերով կըցուցընէ թէ ին-տո՛ր ինքը բարերար է ։

Աստուածաշունչը մեզի կըզըրուցէ թէ ինքը բոլորովին սէր է ։ Ա՜խ՝ ո՛ր-չափ մեծ էր ան իր սէրը մեր վրա-յով, որ իր մէկ հատիկ սիրելի Որ-դին տըւաւ որ մեզի համար մեռնի ։ Եւ ո՛րչափ մեծ էր Յիսուս Քրիստո՛-սին սէրը մեր վրայ, որ ինքը երկին-քէն իջաւ, ու մէկ տըրտմալից կեանք մը վարեց, և չարաչար ու անարգա-կան մահով մը մեռաւ, որ անով մեզ խալըսէ ան պատիժէն՝ որուն որ ար-ժանի էինք մեր մեղքերուն համար ։

Երբոր մենք Քրիստոսի սաստիկ սիրոյն վրայ որ խորհելու ըլլանք, այլ ան մեր ուխտեցած անձնատրու-թիւնը ինչո՛ւ անարգ ու ատելի՝ և մե-ղանչական բան մը պիտի երևայ մե-զի ։ Բայց մենք՝ որ մեզի համար Քրիստոս մեռաւ, կըխորհինք մեր

զրգռոտիկ երջանկութեանը համար , ու ջանք կընենք որ մեր բարութիւնը զարգացունենք՝ ուրիշներուն աղէկ ըլլալուն չի նայելով , և մինչև անգամ կուզենք՝ որ ուրիշները նեղութիւն քաշեն . և շատ էվելօք նեղութեան մէջ իյնան՝ միայն թէ մենք մեր ունեցած մխիթարութեանը ու վայելչութեան մէջ մնար չի ձգենք անոնց համար : Նաև ատկէց 'ի զատ ան որ ամէնէն գէշն է՝ ուրիշներուն անիրաւութիւն կընենք անանկ բանի մը համար , որով մեր բուն երջանկութիւննի ալ չենք կրնար ձեռք ձգել :

Ահա սիրելիներս , աս անձնասիրութիւնն էր՝ որ այսչափ թշուառութիւն պատճառեց ( ինչպէս որ Գիրքերը մեզի ցըուցեց ) մեր տանը մէջը ան օրը՝ որ ես հեռուցեր էի ձեզմէ :

Նոյն անձնասիրութիւնն էր ալքաս , որ պատճառեց մեր ընտանեայը մէջ ունեցած թշուառութիւններուն մեծ մասը . ան էր ձեր ի-

րարու հետ բրած հակառակութեա֊
նը ու կուխներուն պատճառը ։ Ա՛տեն
մը աս անձնասիրութիւնը ձեզի ա֊
ռաջնորդ եղաւ , որ անանկ զգացում
ունէիք՝ որ չէիք ուզեր իմ իշխանու֊
թեանս հնազանդ ըլլա՛լ ։ Ա՛ս անձնա
սիրութիւնը ձեզի առաջնորդեց ալ՝
որ Ինծի անհնազանդ ըլլաք ան բանը
ընելով որ ես ձեզի կըհրամայեմ չը֊
նելու , կամ չընելով՝ որն որ ես ձեզի
պատուիրեցի որ ընէք ։

Ա՜խ , աս անձնասիրութիւնը ձեզի
առաջնորդեց անհնազանդ ըլլալու
ա՛լ իմինէս աւելի ան ծայրագոյն իշ֊
խանութեանը Աստուծոյ ։

Աստուած կուզէ՝ որ դուք ուրիշնե֊
րուն երջանկութիւնը բուն ձեր ան֊
ձին երջանկութեանը պէս ուզէք ․
կուզէ որ դուք ուրիշները բուն ձեր
անձին պէս սիրէք՚ ։ Բոլոր ան պատ֊
ուէրները՝ որոնք որ ինքը տուաւ մեզի
Սուրբ Գիրքին մէջը , անոնք սուրբ՝
արդար ու բարի են ։ Արժա՛ն է՝ որ ին֊

քը մեր վրայ կառավարութիւն ընէ ։ Քանզի ինքը ստեղծեց մեզ , ու մեզի տուաւ բոլոր մեր մխիթարութիւնները ու բարութիւնները , ու իր յատուկ ողորմութիւնները ։ Մենք կըպարտաւորինք՝ որ իրեն մատուցանենք մեր սրտերուն ու մեր մարմիններուն կատարեալ հնազանդութիւնը ։

Ինքը մեր վրայ կառավարութիւն կընէ նաև մեր բարութեանը համար՝ Թէ որ մենք զինքը սիրելու ըլլանք՝ ու իրեն հնազանդինք ։ Իր օրէնքները իրեն ստեղծած արարածներուն բարութեանը համար դրված են ։ Թէ որ մենք և ուրիշ ամէն արարածները իրեն հնազանդելու ըլլանք , ալ ամէն տեղ հաստատուն ու կատարեալ երջանկութիւն մը պիտի ըլլայ ։

Բայց աւա՜ղ՝ իմ սիրելի՛ զաւկըներս , որ դուք Աստուծոյ աս օրէնքները չի բռնեցիք ։ Ու աս բանը դուք ձեր անձնասիրութեամբը ըրիք , ինչպէս որ ճիշդ իմ պատուէրներս ալ ան պատճառաւը զանց ըրիք ։

Ասոր՝ ահա Աստուծոյ օրէնքները՝ որոնք որ Աստուած մեզի Սուրբ Գրքին մէջը խօսեր է՝ կամ որոնք մարդ մը իր բնական լուսովն ալ կըրնայ իմանալ , անոնք զանց ընելը ու չի բռնելը մեղք է ։

Հիմայ միտքերնիդ բերէք ան իրեն երկու մեծ պատուէրները , որոնք ուրիշ ամէն մնացածները իրենց մէջը կըպարունակեն . մէյմը որ , Քու Տէր Աստուածդ պիտի սիրես քու բոլոր սրտովդ ու քու բոլոր հոգիովդ , ու քու բոլոր զօրութիւնովդ , ու քու բոլոր մտքովդ ։ Երկրորդ՝ Քու ընկերդ ալ քու անձիդ պէս պիտի սիրես ։

Սակայն ձեր անձնասէր ու մեղաւոր սիրտը ձեզի ճամբայ կըցուցնէ՝ որ չէք ուզեր հնազանդիլ աս պատուէրներուն , և հետևապէս ան մէկալ պատուէրներուն՝ որ անոնց մէջը կըպարփակին ։ Ձեր կամքը չի հաճիր ան պատուէրներուն հնազանդող ըլ-

լաւ , հապա կըմերժէք անոնք՝ ու ան_
հնազանդութիւն կ'ընէք դուք : Նու
ահա աս ամէնը՝ որ դուք ընելու կըլ_
լաք , մեղք է :



# ԳԼՈՒԽ. Ե։

---

Տղաքը ինքզինքնին Աստուծոյ մէջ ջանքէ օ-
րէնքը կ'իմանան, բայց զանց կընեն անոնք ։
Արդարև մեղք ըրած ըլլան անոնք՝ թէ և պա-
կասէն ծանօթութեան մըն ու չանսալնուն
Աստուծոյ վրայ ։ Մեղքը՝ որուն համար որ
գիտցուած չըլլար, մեղք չհամարուիր վրայ է ։

*Գուրգէն. Մայր՝ երէկ հրամանքդ մեզի խօսեցար որ Աստուծոյ օրէնքները զանց ընելը մեղք է ։*

*Ես մեղք գործեցի՞ մի՝ երբոր պզտիկ էի՝ ու Աստուծոյ կամ անոր օրէնքներուն վրայով բան մը չէի գիտեր նէ ։*

*Մայր. Զաւակս՝ Աստուած մեզի Սուրբ Գիրքին մէջը սորվեցուցեր է, որ դուք մեղքի մէջ ծնած էք, որ դուք մոլորեր էք շիտակ ճամբէն՝ և մէկ մեղաւոր մը եղած էք ձեր առջի օրերնէդ ՚ի վեր. և թէ՝ ձեր սիրտը մինչև որ Սուրբ Հոգիով չի նո-*

ըմբռնէին նէ, անիկա ամէն բանէն աւելի խաբէբայ ու անիրաւ չար մըն է ։ Հիմայ՝ այս բանին ճշմարիտ ըլլալը ձեզի ցուցընելու համար ձեզի ամէնուդ մէկ խնդիր մը պիտի հարցունեմ ։

Երբոր դուք շատ պզտի տղաք էիք՝ այնչափ պզտիկ որչափ որ խելքերնիդ կըհասնէր նէ, արդեօք շատ անգամ դուք ներսերնիդ չիմացա՞ք մի՝ որ պատժըվելու արժանի էք ։

Գրիգոր · Այո իմացայ մայր ։

Աղէքսա · Անանկ ալ ես իմացայ ։

Արմոգ · Ա՛ս ալ ։

Գրիգոր · Սակայն մայր՝ հրամանքդ մեզի զրուցեցիր որ՝ Աստուծոյ օրէնքները զանոնց ընելը մեղք է ։ Ու տակաւին ինծի չերեւարկոր՝ թէ ինչպէս կրնանք մեղք գործել, երբոր ան օրէնքներուն վրայով մենք բանի մը տեղեկութիւն չունինք նէ ։

Մայր · Ան իմ երէկվան զրուցածս ճշմարիտ է՝ որ ըսի թէ, Աստուծոյ օրէնքները՝ որոնք ինչպէս որ Աստուած

Սուրբ Գիրքին մէջը մեզի խօսեր է , կամ (առանց մոլէն ըսել) անոնք որ ուրիշ կերպով՝ այսինքն բնական լուսով մարդս կրնայ իմանալ նէ , անոնք չէ բռնելը մեղք է :

Աս օրէնքները կըպահանջեն՝ որ մենք սուրբ ըլլանք , այսինքն՝ եղերոք զԱստուած սիրենք , ու ամէն բանէ մէջ իրեն հնազանդ ըլլանք , և ուրիշները անձերնուս պէս սիրենք :

Ուստի զանազան ճանապարհներ կան , որոնց մէջը Աստուած մեզի իր օրէնքները կըճանչցունէ :

Իմացընէ ինքը մեզի Սուրբ Գիրքին մէջը ամէնէն եղել պայծառ ու աղէկ կերպով խօսեցաւ իր վրայովը , և ան ամէն բաներուն վրայով որ մեր պարտաւորութիւններն են : Ու աս ան օրհնեալ Գիրքին մէջն է՝ որուն մէջը մենք դիւրաւորապէս իր օրինացը վրայով տեղեկութիւն պիտի ստանանք :

Նաև՝ իրեն շինած բաներուն մէջ

մեզի կը ցուցընէ զինքը․ և անոնք ին֊քը կը կառավարէ մէկ քանի օրէնքնե֊րով, որոնցմէ շատերը մենք կրնանք գտնալ ։

Մենք աս բաները գտանք՝ որ արևը կեցլայ ու կը մտնայ որոշեալ ժամանա֊կին, և որ՝ ամառը ու ձմեռը իր ժա֊մանակին կանոնաւոր շրջաններովը կը դառնայ ։ Նմանապէս պէտք է՝ որ մեր գործքերուն ալ յարմար ժամա֊նակը նայինք ։ Եթէ որ մարդիկ ու֊զեն բոլոր օրը քնանալ, և բոլոր գիշերը բանիլ, և միայն ձմեռվան մէջը սերմ տնկելնէ, անոնք ան գոր֊ծը չէ թէ միայն յիմարաբար ըրած կըլլան, հապա նաև չարաչար ։ Ահա աս կերպ բաներուն համար դրված Աստուծոյ օրէնքները թէ որ մենք խանգարենքնէ՝ մեղք կըլլայ, ինչպէս որ Սուրբ Գիրքին մէջը մեզի տրված Աստուծոյ օրէնքներուն զանցառու֊թիւնը մեղք է ։

Նմանկ՝ թէ որ մէկ մարդ մը գիտ֊

նայ՝ որ մէկ մասնաւոր բան մը ուտե-լովը կամ խմելովը իրեն վնաս պիտի ըլլայ մէկ Թիւնաւոր դեղի մը պէս, որ իր առողջութեանը ու զօրութեանը կըվնասէ, ինքը կըգտնայ Աստուծոյ անանկ մէկ օրէնքը՝ որ ան բանը ընե-լու արգելք եղած ըլլայ։ Եւ Թէ որ ինքը աս գիտնալովը՝ սովորութիւն ընէ ան բանը գործածելու, ալ ինքը Աստուծոյ ան կերպ օրէնքը կոտրած կըլլայ, ու անոր դէմ մեղք գործած կըլլայ։

Պուրկէօր. Առիկա չէ՞ մի պատճառը՝ մա՛յր, որուն համար որ մեղք պիտի ըլլայ զօրաւոր ըմպելիքներ գործա-ծելը հասարակ խմելիքի մը պէս։

Մայր. Այո՛ զաւակս. ես ալ ուրախ եմ որ աս իմ ձեզի զրուցած բանս այսչափ աղէկ հասկըցար, որ դուն աս ընդհանուր սկզբունք եղած խօս-քես աղէկ հետեւութիւնով մը մասնա-ւորապէս միտքդ ան խմելիքին վրայ բերիր։

Աշկտ. Ա՛յլ՝ ինչո՛ւ համար մեղք է մեր առողջութեանը ու զօրութեանը վնասող մէկ բան մը գործելը։

Ուսց. Անոր համար որ՝ եթէ մեր մարմինը հիւանդոտ ու տկար ըլլայ նէ՝ անով մեր միտքն ալ կըտկարանայ։ Եւ այն տկարութեանը պատճառաւ նոյնչափ քիչ կարողութիւն պիտի ունենանք զԱստուած սիրելու մեր բոլոր հոգիովը ու զօրութիւնովը՝ ու միտքովը. և ուրիշներուն աղէկութիւն ընելու։ Եւ նոյնչափ քիչ պիտի կրնանք մեր պարտքը կատարել շատ կողմերէն։

Ասանկով դուք կըտեսնաքկոր որ՝ ինտո՛ր Աստուծոյ օրէնքներուն մէկը կոտրելը, որն որ թէ՛ Սուրբ Գիրքին մէջ մեզի զըրուցված է, կամ թէ մէկ ուրիշ կերպով մը գըտնըված է, ճամբայ կըբանայ մէկալ օրէնքներուն ալ կոտրելու, կամ մեզ կարգիլէ անոնց հնազանդելու պէտք եղածին պէս։

Նու ան է մեղքին մեծ չարիքներուն մէկը ։ Քանզի մէկ մեղքին յանձնառութիւնը միշտ ճամբայ կըբանայ ուրիշ մեղքերու գործածութեանը ։ Ո՛նիկա՝ որ Աստուծոյ մէկ օրէնքը կը-կոտրէ՝ շատ անգամ նոյնպէս ուրիշ օրէնքներն ալ կըկոտրէ , կամ թէ շուտով պատրաստ կըլլայ անոնք կոտ-րելու ։ Աստուծոյ օրէնքներուն մէկ քանին պզտի տղաքն ալ գիտեն՝ մէկն ալ անոնց չի սորվեցունելովը ։ Ին-քիրէննուն շատ բաներ աղէկ եղեր՝ գէշ եղեր , կըգըտնան անոնք ։ Շու-տով կըսկըսին տեսնալ՝ որ իրենց զըրուցած կամ ըրած շատ բաները կընան ուրիշները երջանիկ ընել կամ թշուառ ։ Իրենք կիմանան որ աղէկ բան է ուրիշները երջանիկ ընելը , ու գէշ բան է թշուառ ընելը ա-նոնք ։

Կըտեսնան անոնք՝ որ մէկ հայր մը կամ մայր մը՝ որ իրենցմէ մեծ է ու իմաստուն , իրենց ընտանեացը գը-

ըուլխն են ։ Անոնք կիմանան որ՝ աղէկ
է հօրն ու մօրը հնազանդ ըլլալը , և
որ՝ անոնց անհնազանդ ըլլալով պա_
տիժի արժանի կըլլան ։ Կըտեսնան
եղբայրնին ու քոյրերնին իրենց քո_
լորտիքը , և կիմանան որ՝ աղէկ է ան
եղբայրները ու քոյրերը սիրելը , և
բարեբարոյ ըլլալ անոնց , և ընդու_
նել անոնք՝ ինչպէս որ իրենք անոնց
ընդունելի ըլլալ կուզեն նէ ։ Կիմա_
նան՝ որ գէշ բան է աս կերպ աղէկ
բաներ չընելը իրենց հօրն,ու մօրը
ու եղբայրներուն և քոյրերուն ։

Ուստի Աստուած է՝ որ տղոցը աս
բաները ճանչնալու ընդունակ միտ_
քեր կուտայ , ու աս բաները զգալու
ընդունակ սիրտեր կուտայ . ուրիշ
կերպով խօսիմ , Աստուած է որ ա_
նոնց խղճմտանքներ կուտայ ։

Նաև ինքը այնպէս կարգադրեր է՝
որ տղաքը իրենց վրայ կամ ուրիշ
մարդոցը վրայ տեսած բաներէն ան_
շուշտ սորվին ու զգան աղէկը ու գէշը

բնական լուսով ։ Ուստի տղայոց առանց սորվելը և աս բաները զգալը Աստուծոյ բնական օրէնքն է կրնայ ըսվիլ ։

Ու թէ որ տղաքը իրենց խղճմըտանքին Աղէկ է զրուցած բանին դէմը գործելու որ ըլլան , Աստուծոյ օրէնքը կըկոտրեն . և անատեն կիմանան՝ որ պատիժի արժանի են իրենք ։

Աստուած անոնք անա՛նկ ստեղծեց՝ որ իրենց յանցաւոր ըլլալը իմանան աս կերպով ։ Հիմայ աս պատճառաւ յատկապէս կրնայ ըսվիլ թէ , Տղաքը մեղք կըգործեն՝ Աստուծոյ օրէնքները կոտրելով , թէ և տակաւին Աստուծոյ վրայով բան մը գիտնալու կարող ալ չըլլան ։ Աս բանը ընելովնին՝ կըցուցընեն սրտին անկերպ չէշուռթիւնը , որն որ իրենց ճամբայ կըբանայ Աստուծոյ որ և իցէ օրէնքը կոտրելու , թէ որ իմանալու կարող ըլլային՝ որ Աստուած իրաւցընէ՛ աս օրէնքը տըւած է անոնց , և թէ

որ միտքերնին զար՝ որ ան օրէնքը ի_
րենց կամքին ու վայելմունքին դէմ է ։

Որդ․ Մայր՝ ես պզտի տղայ մըն
եմ, բայց գիտեմ որ՝ ինչ որ հրա_
մանքդ զըրուցեցիր նէ՝ աղէկ է ։ Ինչ_
պէս որ հրամանքդ ըսիր Թէ՝ Տղաքը
կիմանան մէկ բանի մը աղէկ ու գէշ
ըլլալը, ճիշտ այնպէս՝ կըխիշեմ Թէ,
ես ալ խորհեր ու զգացեր եմ ։

Մայր ․ Այո՛, ամէն տղայ ատ բանը
գիտէ ․ և գիտէ ալ, որ իր հայրն ու
մայրը և վարժապետը շատ անգամ
իրեն յայտնի կիմացունեն՝ Թէ ո՛ր բա_
նը աղէկ է, և ո՛ր բանը՝ գէշ ։ Ու իր
խղճմտանքն ալ՝ ան իրենց զըրուցած
բանին վրայ կըվկայէ, Թէպէտ և ին_
քը այնչափ պզտիկ ալ եղած ըլլայ՝
որ տակաւին Աստուծոյ վրայով շատ
բան սորված չըլլայ, հապա քիչ մը
բան միայն ։

Ինքը կըտեսնայ՝ որ իր հայրը ու
մայրը և վարժապետը իրմէն ծայրա_
գոյն են ․ և ինքիրմէն կիմանայ որ՝

աղէկ է անոնց հնազանդ գտնըւիլը ։ Իսկ աս չընելովնին՝ ան օրինաւոր հեղինակութեանը մէկ ընդդիմութիւն մը կըցուցընեն , որ անով կերեւայ թէ չեն յօժարիր նոյն Աստուծոյ իշխանութեանը հնազանդելու , թէ որ իրենց անձնասէր ցանկութիւններուն ու բաղձանքներուն դէմ բան մը եղած որ ըլլայնէ ։

Ու թէ որ տղաքը իրենց ծնողքներուն և վարժապետներուն տըւած վարժութիւնները ․ անի տեղ չի դընեն՝ ու չի հնազանդին անոնց , արժան է ըսել թէ անոնք Աստուծոյ օրէնքներուն դէմ ալ մեղք կըգործեն , թէպէտ և քիչ գիտնան Աստուծոյ վրայով , կամ բան մըն ալ չի գիտնան ։

Աւրեմն կըտեսնաք զաւկըներս , որ մեղքը ճիշտ Աստուածաշունչին բառծին պէս Աստուծոյ օրէնքին զանցառութիւնն է ․ Աստուծոյ օրէնքին դէմ գործելն է ․ Աստուծոյ դէմ ապստամբութիւն մըն է մեր զգացումներովը

ու վարքերովը . և ամ օրէնքը՝ ինչ-
պէս որ մեզմէ կը պահանջէ , անանկ
չըլլալը՝ և այնպէս չընելն է ։

Կըրնանք ալ , որ պզտի տղաքը
մեղք կընան գործել . և իրաւ մեղք
կըգործեն՝ իրենք Աստուծոյ և Աս-
տուածաշնչին վրայով բան մը սոր-
ված ըլլալէն ալ առաջ ։

Անոնք շատ կանուխ իրենց վարքին
մէջ կըցուցընեն՝ թէ Ադամին ու
Եւային մեղքը՝ որ աշխարհի մէջ
այս չափ մեղք ու թշուառութիւն բե-
րելու պատճառ եղաւ , իրենց վրայ
ալ իջած է ։

Անոնք շատ կանուխ կըցուցընեն
որ իրենց սիրտերը Աստուծոյ վրայ
սէր՝ ու Աստուծոյ օրէնքներուն հնա-
զանդելու յօժարութիւն չունին . և
որ՝ ասանկով իրենք մարդկային բո-
լոր ընտանեայը մեղանչող հօրը ու
մօրը մեղաւոր զաւկըներն են ։

Կանուխկէկ կըցուցընեն՝ որ իրենք
իրենց մէջը ունին ան մեղանչական

բնութիւնը, և ան անձնասիրութիւնը՝ և ան օրինաւոր իշխանութեան հակառակութիւնը, որ Աստուծոյ կամքին դէմ կըհակառակի, որնոր Աստուածաշունչին մէջը մեզի տըւած իր օրէնքներուն մէջը յայտնըված է ։ Իջու աս մեղանչական բնութեանը Աստուծոյ ամէն օրէնքներուն հակառակ ըլլալը յայտնի կերևայ՝ շատ մը տըղան ան օրէնքներուն մէջ ծանօթ եղածին պէս. և ասանկով շարունակ ան բնաւորութիւնը կերևայ՝ իր սրտին մէջը՝ մինչև որ Հոգւով Սրբով՝ նորոգվելու ըլլայ նէ ան ։

Նորոգ. Այ՛ր՝ մեղքը շատ գէշ բան մըն է եղեր. ես բնաւ առաջուց ասանկ չէի խորհեր, որ այսչափ գէշ է ։

Այր. Հայր՝ ի՞նչ կըսես դուն. Ճշմարիտ ասանկ է ։ Մեղքը պզտի տղոցը մէջն ալ շատ գէշ բան է. դուք ալ գիտէք թէ՝ ո՛րչափ գէշութիւն կըպատճառէ անիկա ։ Մեղ-

քը այն տղաքը և իրենց քովի եղողնե֊
րը թշուառ կընեն․ մեղքը կըկործանէ
մէկ տան մը աղէկ կարգը ու վայել֊
չութիւնը ։ Մեղքը հայրն ու մայրը
լացուներ կուտայ իրենց տղոցը դէշ
վարքին վրայ ։ Մեղքը զիրենք վա֊
խով կըլեցունէ, երբոր խորհին թէ
տղաքնին մեծնալու ըլլան նէ, ինտոր
մարդիկ պիտի ըլլան ։

Ահ՝ պզտի տղոցը դէշութիւնին
մեծ բան ըլլալուն սոսկալի պատճառը
աս է՝ որ քանի մեծնան՝ իրենց դէշու֊
թիւննին ալ հետերնին կաճի ։

Թէ որ մեղքին վրայ ողջում չըլ֊
լայ՝ և անիկա չի յաղթըվի նէ, միշտ
աճելու վրայ է ան ։

Ան պզտի տղան՝ որ յամառութիւն
կընէ՝ և իր կամքը կուզէ ընել՝ ու կը֊
հրաժարի ծնողացը հրամաններին հնա֊
զանդելէն, և ան դէշ բաները որ ծը֊
նողքը կարգիլէն ընելու՝ ինքը կըգոր֊
ծէ նէ, ալ անիկա մեղքի մէջ եվե֊
ըք կըյառաջանայ՝ թէ որ մէկ մեծ

փոփոխութիւն մը ընդունելիքին չըլլայ-
նէ Աստուծոյ Սուրբ Հոգիովը ։ Ան-
անոր յամառութիւնը և կամապաշ-
տութիւնը պիտի աձի ։ Եւ վերջա-
պէս իր շարունակ կենացը մէջ այն-
չափ մեղքի մէջ գուցէ պիտի հաս-
տատուի , որ ալ Աստուծոյ ու մարդոց
օրէնքները պիտի անարգէ , և սովո-
րի մէկ մեղք մը պիտի գործէ , և ան-
պատճառաւ իր անիրաւութեանը պա-
տիժը պիտի քաշէ մէկ ամօթալի դա-
տապարտութիւնով մը ։

Ասկէց 'ի զատ , մտմտացէք տը-
ղաքս , թէ ինտո՞ր կըսրդողի ան մեծ
ու ամենասուրբ Աստուածը ձեր վրայ՝
երբոր մեղք կըգործէք նէ ։

Մեղք գործելով դուք Աստուծոյ
օրէնքները կըկոտրէք , ու իր իշխա-
նութիւնը կանարգէք ։ Դուք ինքի-
րէննուդ կըցուցընէք ձեր ապերախտ
ըլլալը ան Լուսթեանը դէմ , որ ինքը
ձեզի այնչափ բարութիւններ ըրաւ ,
և ինքը ձեզ այնչափ սիրեց՝ որ մինչև

իր մէկհատիկ ու սիրելի Որդին աշ-խարհ խրկեց ձեզի համար մեռնելու ։ Դուք կըցուցընէք, որ իր ստեղ-ծուածները երջանիկ ընելու համար իրեն ըրած բաներուն հակառակը կ'ընէք կոր, որ ձեր հոգը չը՛ ըլլարկոր ուրիշներուն երջանիկ ըլլալուն վրայ. և որ՝ դուք անյարմար էք ան մէկալ աշխարհը երթալու, ուր որ ամէնքը երջանիկ են՝ զԱստուած սիրելով՝ ու անոր ծառայելով, և իրենց քովը ե-ղողները ամէնքը սիրելով ։

Մտմտացէք աս բաներուն վրայ տը՛ղաքս. և ըլլայ որ Սուրբ Հոգին ձեզի առաջնորդէ այնպէս խորհելու ու զգալու՝ ասոնց վրայ միտք դնելով, որ իմ ըսածներս ձեզի օգտակար ըլ-լայ ։

# ՓՆՈՒՆ. ԺԲ.

---

Համառօտագրելութիւն մը Աւետարանին վրայ։ Քննա-
տէին Մեծին գործին օրինակը։ Մեծին հանդէպ
պարագայութիւնը՝ որ սուրբ պատմիչին մեծեն
կը յայտ, ճշմարիտ Աստուածէ։

Գրիգոր. Մայր, աս իրիկուն մե-
զի մէկ նոր բան մը զրուցելու սկսե-
լէդ առաջ, շատ կըցանկամ՝ որ նո-
րէն հրամանքդ քիչ մըն ալ խօսիս ան
մէկ քանի բաներուն վրայով, որոնք
որ հրամանքդ մեզի սորվեցուցիր։

Մայր. Ուրախութեամբ ատիկա կը-
նեմ՝ զաւակս. ինչու որ ես կուզեմ
որ դուք ամենքդ պայծառ կերպով
հասկընաք թէ ինչ է մեղքը, որ ա-
նանկով դուք կարող ըլլաք իմանալու
թէ ինչ է մեղքի վրայ զղջալը։

Ուրեմն հաստատ միտքերնիդ ինծի
տուէք։

Ես ջանացի՝ որ ձեզի ցուցընեմ թէ
դուք գէշ սիրտեր ունիք, և որ դուք
ազատակամ էք կամ անձնիշխան։

Դուք անանկ միտքեր ունիք՝ որ կրնան գիտնալ թէ ո՛ր բան աղէկ է, և ո՛ր բան գէշ է: Դուք անանկ սիրտեր ունիք՝ որ կարող էն երջանկութիւն զգալու երբոր աղէկ բան մը ընէք, և թշուառութիւն զգալու՝ երբոր գէշ բան մը ընէք: Անանկ խղճմտանքներ ունիք որ երբ աղէկ բան մը ընէք ձեր ըրածին կը հաւնի, ու անով դուք երջանկութիւն մը կըզգաք. և երբոր գէշ բան մը ընէք՝ անհաճոյ կըլլայ ձեր գործքերուն, որով դուք թշուառութիւն կըզգաք անատեն:

Ու ասոր բոլոր եղած բաներուն վըրայ՝ դուք ներսիդինուդ կիմանաք որ, չէ թէ մէկ բան մը ձեզ բռնադատելու վրայ կըլլայ աղէկը կամ գէշը ընելու, հապա որ՝ դուք ձեզմէն ազատաբար կըգործէք աղէկն ու գէշը, և ճիշտ ձեր ուզածին պէս կընէք:

Հիմայ Աստուած ձեզ չի թողուց որ տգէտ ըլլաք աղէկն ու գէշը ո՛րն ըլլալուն: Ինքը շատ հոգ ունեցաւ

սորվեցունելու ձեզի իր օրէնքներուն ինչ ըլլալը՝ աղէկին ու գէշին. Նայելով։ Ինքը անանկ կարգի դրաւ, որ շատ բաներու մէջ կրնաք գտնալ ձեզմէն իր օրէնքներուն ինչ ըլլալը, որ բանը պէտք է ընել ձեզի, և որ բանը պէտքը չէ ընել։ Ինքը նաև ձեզի համար պատրաստեց ծնողքներ ու վարժապետներ, որ ձեզ էվելօք վարժեցունեն ձեր պարտաւորութիւններուն վրայ։ Նաև որ՝ անոնք ալ դուք ալ մէկ տեղ էվելօք պայծառ ու կատարելապէս իմանալու համար իր կամքին որն ըլլալը, ինքը մեզի Սուրբ Գիրքին մէջը ուրիշ իր օրէնքներն ալ իմանալ տուաւ։

Այս օրէնքներուն մենք հնազանդ ըլլալով, շատ ապահով ճամբայ պիտի գտնանք՝ որ աս աշխարհիս մէջ ինքզինքնիս և ուրիշները էվելօք երջանիկ ընելու կարող ըլլանք. ու ան գերեզմանէն ետքը մեր յաւիտե-

նական երջանկութեանը վրայ տարահով ըլլանք ։

Աստուած տըւաւ իր օրէնքները, որ իր կամքը գիտցունէ իր արարածներուն. և ցուցընէ թէ՝ ինքը ինչ մէկ մեծ՝ իմաստուն՝ բարի՛ սուրբ և արդար Էակ մըն է ։ Ու որ ան իր արարածներուն և իր ստեղծած բաներուն վրայ իրեն գլուխ ըլլալը արդար ու ամէնէն աղէկ բան մըն է ։

Աստուած դըրաւ իր օրէնքները, որ անոնց հնազանդ ըլլալով իր արարածները՝ անոր սէր ու պատիւ ցուցընեն. որ իրեն արժանապէս կըվայլէ մատուցանել ։

Աստուած իր օրէնքները դըրաւ, որ անոնց հնազանդ ըլլալով իր արարածները՝ կարենան իրեն պէս աղէկ ու սուրբ ըլլալ ։

Աստուած իր օրէնքները դըրաւ, որ անոնց հնազանդ ըլլալով իր արարածները՝ ամէն մէկերնին ան ամէնէն մեծ երջանկութիւնը՝ որուն որ իրենք

ընդունակ են , ձեռք ձգեն հիմայ ու յաւիտեանս ալ ։

Աստուած իր օրէնքները դրաւ , որ անոնց հնազանդելով իր արարածները՝ կարենան մէկ մեծ սիրոյ ընկերութիւն մը կազմել . և անանկով բոլորը երջանիկ ըլլան՝ սիրելով ու հնազանդելով Երկնաւոր Հօրը , որ ինքը ըրաւ ու գոյացուց՝ ու աճեցուց անոնք . և ուրիշներն ալ սիրելով՝ ու անոնք աղէկ և երջանիկ տեսնալով ։

Աստուած դրաւ իր օրէնքները , որ՝ եթէ իր արարածներէն մէկը , որ իր բոլոր բարերարութիւններուն դէմ ապերախտ ըլլալով յանձն չառնէ ան օրէնքներուն հնազանդիլ նէ , ինքը ցուցընէ անոնց և բոլոր էակներուն ալ , որ ան իր իշխանութիւնը պատիժով ալ պիտի պահել տայ ։

Քանզի մենք տեսանք թէ՝ ինչ խառնակութիւն ու թշուառութիւն պիտի ըլլայ , թէ որ Աստուած չի կառավարէ բոլոր իր ստեղծած էակնե֊

իր ։ Եւ թէ որ թող տայ անոնց , որ իր իշխանութեանը հնազանդ ըլլան կամ չըլլան , ինտոր որ կուզենէ ։

Սակայն Աստուած իր իշխանութիւնը անշուշտ պիտի պահէ ․ ինքը ճիշտ ինչպէս որ բարի է՝ անանկ ալ արդար պիտի ըլլայ ։

Ինքը իր սոսկալի արդարութիւնը պիտի ցուցընէ բոլոր ան էակներուն վրայ , որոնք որ չեն ուզեր իր օրէնքներուն հնազանդ ըլլալ ։

Ինքը պիտի պատժէ անոնք մէկ ալ աւելի երեւելի ու աղէտալի կերպով մը՝ իր երեսէն մէկդի ընելով անոնք յաւիտեանս , եւ թող տալով անոնք թշուառութիւններ քաշելու , որ բուն իրենց կենցաղավարութիւնը պիտի պատճառէ՝ ու արժանի ընէ ան թշուառութիւններուն ։

Եւ ահա դուք հիմայ տեսաք զաւկըներս Աստուծոյ մեզի ինչու համար օրէնքներ տալուն քանի մը պատճառները ։

Այս օրէնքները իրենց մէջ սուրբ են՝ արդար և բարի են։ Անոնց համար ձեր խղճմտանքները կըվկայեն թէ աղէկ են։

Դուք կիմանաք որ՝ ձեզի պէտք է այն օրէնքներուն հնազանդ ըլլալ։

Ուստի՝ այս օրէնքներուն անհնազանդ գտնըվիլը մեղք է։

Երբեկ մարդիկ՝ կնիկ մարդիկ ու տղաք Աստուծոյ այս օրէնքներուն անհնազանդ եղած են՝ իրենք մեղաւոր ու անձնասէր սիրտեր ունենալնուն համար։ Այն օրէնքները երաւցընէ հակառակ են այս մեղանչականութեանը։ Անոնք կըպահանջեն՝ որ մենք սիրենք զԱստուած մեր բոլոր հոգիովը ու զօրութիւնովը՝ ու մտքովը. և որ՝ սիրենք ուրիշները ինչպէս որ անձերնիս կըսիրենք նէ։

Այս բանը մեղաւորին անձնասէր բաղձանքին հետ կըհակառակի, որ իր մասնաւոր աղէկութեանը կընայի՝ ան կերպովը՝ որ ուրիշներուն բարու_

Թիւնը կըպակսեցունէ՝ ու կաւրէ ։ Ու ինքը չի նայիր ուրիշներուն աղէկ ըլլալուն , կամ ընդհանուր արարածներուն բարութեանը վրայ , որոնց որ Աստուած Հայրը ու Գլուխն է ։

Ուստի մեղաւորը չի հաճիր Աստուծոյ աս օրէնքներուն ․ ինքը չի կամիր՝ որ հնազանդի աս օրէնքներուն ։ Յանձը չառներ Աստուծոյ արդար ու բարի կառավարութեանը հընազանդիլ ։

Թէ որ աս ամէն բաները ասանկ են նէ , մի՛ տարակուսիք զա՛ւկըներս՝ որ դուք մեղաւոր էք ։ Դուք հիմայ կըհասկընաք՝ թէ ինչ բանի համար մեղաւոր ըսվելու էք , և ինչ կերպ մեղաւորներ էք ։ Ու կըյուսամ որ՝ աս ձեզի աղէկ ուշադրութիւն ընել տայ պիտի ան մեր խօսելու բաներուն՝ որ Օղջումին վրայ են ։ Վանզի ամենէն մեծ նիւթը աս է , որ դուք աղէկ մը գիտնաք թէ ինչ է ճշմարիտ Օղջումը , և որ ան տեսակ տրամութիւնը

Այս օրէնքները իրեն պէս սուրբ են՝ արդար և բարի են ։ Անոնց համար · ձեր խղճմտանքները կըվկայեն թէ աղէկ են ։

Դուք կիմանաք որ՝ ձեզի պէտք է ան օրէնքներուն հնազանդ ըլլալ ։

Ուստի՝ այս օրէնքներուն անհնա_ զանդ գտնուիլը մեղք է ։

Երիկ մարդիկ՝ կնիկ մարդիկ ու տղ_ ղաք Աստուծոյ այս օրէնքներուն ան_ հնազանդ եղած են՝ իրենք մեղաւոր ու անձնասէր սիրտեր ունենալնուն համար ։ Այն օրէնքները իրաւցընէ հակառակ են այս մեղանչականու_ թեանը ։ Անոնք կըպահանջեն՝ որ մենք սիրենք զԱստուած մեր բոլոր հո_ գիովը ու զօրութիւնովը՝ ու մտքովը · և որ՝ սիրենք ուրիշները ինչպէս որ անձերնիս կըսիրենք նէ ։

Այս բանը մեղաւորին անձնասէր բաղձանքին հետ կըհակառակի , որ իր մասնաւոր աղէկութեանը կընայի ան կերպովը ՝որ ուրիշներուն բարու_

թիւնը կըպակսեցունէ՝ ու կաւրէ ։ Նաև ինքը չի նայիր ուրիշներուն աղէկ ըլլալուն, կամ ընդհանուր արարածներուն բարութեանը վրայ, որոնց որ Աստուած Հայրը ու Գլուխն է ։

Ուստի մեղաւորը չի հաճիր Աստուծոյ աս օրէնքներուն. ինքը չի կամիր՝ որ հնազանդի աս օրէնքներուն ։ Յանձը չառներ Աստուծոյ արդար ու բարի կառավարութեանը հընազանդիլ ։

Թէ որ աս ամէն բաները սաստիկ են նէ, մի՛ տարակուսիք զաւկընելու՝ որ դուք մեղաւոր էք ։ Դուք հիմայ կըհասկընաք՝ թէ ինչ բանի համար մեղաւոր ըսվելու էք, և ինչ կերպ մեղաւորներ էք ։ Նաև կըյուսամ որ՝ աս ձեզի աղէկ ուշադրութիւն ընել տայ պիտի ան մեր խօսելու բաներուն՝ որ Զղջումին վրայ են ։ Վասնզի ամենէն մեծ նիւթը աս է, որ դուք աղէկ մը գիտնաք թէ ինչ է ճշմարիտ Զղջում մը, և որ ան տեսակ տրամութիւնը

դուք ձեր սրտերնուդ մէջը ունենաք ։ Ա՞ս է խիստ հարկաւորը . ինչու որ եթէ մեղքը սանկ մէկ գէշ բան մըն է՝ ինչպէս որ մենք տեսանք սանկ ըլլալը , պէտք է որ ամէն բանէն աւելի ցանկանք անկէց ազատ ըլլալ ։ Իսկ Աստուած մեզի աղէկ հասկըցուցեր է իր խօսքովը , որ առանց Զղջումի դուք ընաւ մեղքէ ազատ չէք կրնար ըլլալ ։

Հիմայ մենք պիտի ջանք ընենք , որ գտնանք թէ՝ ո՛րն է ճշմարիտ Զղջումը ։ Իսկ աս ընելու համար՝ մէկ քանի բաները որ մեր առջի խօսակցութեանը մէջ զրուցվեցան , անոնք ձեր միտքը պիտի բերեմ նորէն ։

Աշկ . Ի՞նչ է ան՝ մայր . երբոր զանազան տեսակ տրտմութիւններուն վրայ խօսեցանք նէ , անիկա՞ է մի ըսածդ ։

Մյր . Այո՛ . ու դուք ամէնքդ կըրնաք միտքերնիդ բերել ան զրուցված երկու տեսակ տրտմութիւնները ։

Մէկը ան տրտմութիւնն է , որ մենք յանցանք գործած և անոր համար ներողութիւն քաշած ատեննիս , կամ մեր ըրած յանցանքին համար ներողութիւն մը քաշելու երկիւղ ունեցած ատեննիս ներսիդիննիս կիմանանք ան ցաւը ։ Իսկ մէկալը ան տրտմութիւնն է՝ որ մենք կըքաշենք ներսիդիննիս պէտք եղած բանը չընելնուս համար , և ան բանին պատճառաւ ներողութիւն մը քաշելնուս համար՝ կամ ներողութիւն քաշելու երկիւղ ունենալնուս համար ։

Աշակերտ · Մայր՝ հրամանքդ գիտես ան մարդը , որ անիկա անցած ամիս մեր քեռիէն ըստակ գողցաւ ։ Անիկա հիմայ բանտին մէջն է · ու ես կըմտմտամ որ՝ անիկա շատ ցաւ ու տրտմութիւն զգայ պիտի ։

Մայր · Տըղաս՝ կրնամ ըսել որ , ան հիմայ տրտմութիւն կըքաշէկոր ։ Անիկա անշուշտ տրտմութիւն պիտի ունենայ՝ որ ինքը բանտին մէջն է ,

և որ ինքը մէկու մը հետ չի կրնար խօսիլ անտեղ ։ Կըխորհի՞ս որ անիկա սատակ գողնալուն վրայ տրտմութիւն ունի ։

Սըրմոգ. Կըկարծեմ թէ կըտրտմի. քանզի թէ որ ինքը գողցած ջըլլար նէ անիկա, բանտին մէջը չէր դըվեր ։

Մայր. Երդեօք գիտցըվա՞ծ է մի՝ որ առաջ ալ սատակ գողցած ըլլայ ։

Գրէգոր. Կարծեմ ինքը խոստովանած է թէ շատ անգամ ըրեր է աս բանը. բայց ան ըրածները առաջ ընաւ դուրս չէին ելեր ։

Մայր. Սըրմոգ, դուն կըկարծե՞ս որ՝ իրեն սատակ գողցած ատենները՝ տրտմութիւն քաշած ըլլայ, քանի որ կըխորհէր թէ իր ըրածները չի պիտի յայտնըվին ։

Սըրմոգ. Ըղէկ չեմ գիտեր մա՛յր. բայց եղելօք կըկարծեմ, որ հոգը չէղաւ. քանզի թէ որ տրտմած ըլլար նէ՝ ալ գողութիւն ընելէն մէկ դի պիտի կենար ։

Մայր՝ Ներքոյ անկիա քու քեռւկեղ տնակը գողցաւ, և ան տնակը իր սըն-տուկին մէջը որ գանըրվեցաւ, և եր-բոր իր վըրայ կասկածի երթալով՝ ա-նոկա յանդիմանեցին նէ, կըկարծեմ ս որ՝ ինքը անատեն իր ըրածին վըրայ ցաւ քաշած ըլլայ :

Ներմոգ · Կըկարծեմ թէ ցաւ քաշեց · քանզի անատեն ինքը սկըսեց վախ-նալ թէ գուցէ բանտը կըձգվի :

Մայր · Ընտանեկան իր ունեցած տրտմութիւնովը՝ կամ ան տրտմու-թիւնովը՝ որ կըկարծէք թէ հիմայ ու-նի, յայտնի կըլլայ մի թէ ինքը իր ըրած գողութեանը յանցանքին վըրայ երաւցընէ տրտմած ըլլայ :

Յայտնի կըլլայ, որ իր սիրտը կու-զէ խոստովանիլ քու քեռւկեղ իր ըրած չարութիւնը՝ անկէց ըստակ գողնալը-վը, և իրմէն թողութիւն խնդրել :

Ընով յայտնի կըլլայ, որ ինքը կըյօժարի թողութիւն խնդրել բոլոր

իրեն մինչեւ հիմայ գողցած բաներուն համար , ան ամէն առածները նորէն եւ դարձունելով՝ որչափ որ պատեհութիւն ունի նէ ։ Անով յայտնի կըլլայ , որ ինքը մէյմալ գողութիւն չընէր՝ թէ որ պատեհութիւն ունենայ , եւ թէ որ կարծիք չունենայ որ իր ըրածը պիտի գիտցըվի ։

Նշմոգ . Չեմ կարծեր մայր . ինչու որ ես լսեցի թէ՝ բանտին մէջը եղած ատենին ալ դանակ մը գողցեր է . որ անոր համար իրեն պատիժ տալով շղթայակապ ըրեր են ։

Մայր . Աւրեմն իր ըրած ապտամութիւնը բանի չածէր . որովհետեւ ինքը տակաւին մէկ գող մըն է ։ Ինքը միայն իր պատժըվելուն վրայ տըրտում է ։ Ինքը չի խորհիր՝ որ ուրիշներուն աղէկութիւն ընէ ։ Իրեն հոգը չէ՛ օրէնքին վրայով ։ Անիկա նորէն պիտի կոտրէ ան օրէնքը , թէ որ կրնայ ընել անանկ մէկ բան մը՝ որ յայտնի չըլլըվի ։

Պէրճէնց • Սա՛յր՝ կարծեմ որ ան մարդուն ունեցած սա. անանկ տրտ_ մութիւնը Ճշմարիտ Զղջումի նման բան մը չէ՛ :

Սէրոբ • Տէ՛րզա, Ճիշտ ես ալ նոյն բանը խօսելու վրայ էի • և ուրախ_ եմ՝ որ դուն ինքիրմէդ խորհեցար ա_ նիկա՝ առանց իմ զրուցելուս :

Այո՛՝ քու ըսածիդ պէս Ճշմարիտ Զղջումը մէկ շատ տարբեր տրտմու_ թիւն մըն է մեղքի վրայով :

Թէ որ ան տրտմութիւնը՝ որ դուք ներսիդինէդ կունենաք Աստուծոյ ար_ գիլած բանը ընելնուդ կամ պատուի_ րած բանը չընելնուդ համար, միայն Աստուծոյ ան օրէնքները կոտրելնե_ րուն դէմ սպառնացած պատիժին ու դատապարտութեանը վախուն համար է նէ, դուք անանկը մեղքերնուդ վրայ Ճշմարիտ Զղջում չունիք :

Ա՛ն կերպ տրտմութիւնը չի ցուցը_ նէր՝ թէ դուք ըրած յանցանքնուդ վրայ կըզղջաք • ան չի ցուցընէր՝ որ

դուք Աստուծոյ վրայ սէր մը ունիք ։ և որ՝ դուք կըցանկաք պատուել զԱստուած իր պատուէրներուն հնազանդ ըլլալով ։ Ան չէ՞ ցուցըներ որ՝ դուք կամեցող էք , ուրախութեամբ յօժար էք բոլոր սրտէ հնազանդիլ իր իշխանութեանը ։



# ԳԼՈՒԽ Է.

---

Նոյն նիւթին վրայ խօսելով՝ բացատրութիւն մը։ Յանցանք չէ ազատելու պատիժէն փախչելու ցանկալը։ Խեղճ որբոց անձնասէր պաշտպա-նեանը օրէնքը։

Աննա. Տղա՛քս, անցած երեկուն մենք տեսանք որ՝ մէկ տեսակ սրտմտութիւն մը կրնայ կոր ըլլալ, որ մե-րին մեղք ունենալնուս վրայ կըզգանք, բայց ան տակաւին մեր սրտին մէջը ճշմարիտ Զղջում չէ։

Աս կերպ սրտմտութեանը նայելով, կուզեմ հարցունել Գրիգորին քանի մը խնդիրներ։

Գրիգոր. Ի՞նչ են անոնք մայր։

Աննա. Զանազան ժամանակներ ե-ղած է որ դուն ինծի անհնազանդ գտնըվելուդ համար սրտմտութիւն քա-շեցիր. անանկ չէ՞ մի։

Գրիգոր. Այո՛ մայր։

Աննա. Հիմայ ինծի զրուցէ՝ ի՞նչ

պատճառի համար դուն ան տրտմու-
թիւնը ունեցար ։

Գրէգոր · Կարծեմ անոր համար էր որ՝ իմացայ թէ յանցանք էր ըրածս · և վախցայ որ հրամանքդ կըսրդողիս իմ վրաս՝ և գուցէ իս կըպատժես ։

Մայր · Ո՛չ , ատ քու վախցածիդ պէս տեսար՝ որ ես քեզի սրդողեցայ · կամ երբեմն իմ քեզի սպառնացած պատիժս դուն քաշեցիր քու անհնազանդութեանդ համար · ուստի իմ քեզի սրդողելէս ու պատիժ տալէս ետքը՝ անատեն ինչպէս զգացում ունեցար դուն ներսիդիդ ։

Գրէգոր · Ո՛, անատեն իմ տրտմութիւնս ալ անցաւ · և երբեմն շատ շուտով մոռցայ իմ անհնազանդութեանս վրայով՝ ու ձեր սրդողկութեանը ու պատիժին վրայով եղած բոլոր բաները ։ Երբեմն ալ եղած է որ՝ անոնց վրայ քիչ մը ատեն խորհած ըլլամ, և նորէն անանկ բան մը մէյմալ չընելու համար առաջադրած ըլլամ ։

Մայր . Ինչո՞ւ խորհեցար որ նորէն անանկ բան մը մէյմալ չընես ։

Պրէէտոր . Անոր համար որ՝ գիտցայ թէ ատքը նորէն եւ ձեր սրգողկութիւ-նը կամ պատիժը պէտի քաշեմ ։

Մայր . Բայց բոլոր աս բաներուն մէջ խորհեցա՞ր մի դուն՝ որ ինծի անհնազանդ ըլլալովդ ցուցուցիր թէ դուն պատշաճաւոր կերպով մը իմ օ-րինաւոր իշխանութեանս չի նայեցար՝ որպէս թէ տանը գլուխն , եւ ականջ չի կախեցիր ան կանոններուն կամ օրէնքներուն՝ որոնք որ հարկաւոր են բոլոր ընտանեաց երջանկութեանը ու բարեկարգութեանը համար ։ Եւ ասանկով ինծի անհնազանդ գտնուե-լովդ քեզ տրտմեցո՞ւց մի ։

Պրէէտոր . Կըվախնամ մա՛յր՝ որ աս կերպ չի խորհեցայ ու չըզգացի ներ-ժիղիս ։

Մայր . Խորհեցա՞ք որ ձեր անհնա-զանդութիւնը չար ու գէշ բան էր , թէ և ես անոր դէմը պատիժ խոստա-

ցած չըլլայի նէ , և սա խորհուրդը ձեզ տրամեցո՞ւց մի որ անհնազանդ զանըրվեցաք ինծի ։

Պօլիկտոր . Չեմ կրնար ըսել մա՛յրս , որ մտմտայի ու ասանկ զգայի ։

Մայր . Մտիկ . ուրիշ բան մըն ալ հարցունեմ . Ատեն ատեն դուն ինծի անհնազանդ եղար , ու փախցար ան իմ խոստացած պատիժէս . բայց ան տա կերպ եղած ըլլար , որ քու անհնա_զանդութիւնդ ուրիշ մէկու մը յայտ_նըված չէր՝ միայն թէ ինքըրդինքիդ ու Աստուծոյ ։ Խել մը ժամանակ անցնե_լէն ետև խելքդ հաս ու՝ հաւտացիր որ ան ըրածդ ամենևին դուրս չի պի_տի ելլայ . ա՛նատեն դուն տրամութիւն քաշեցի՞ր քու ըրած չարութեանդ ու անհնազանդութեանդ համար ։

Պօլիկտոր . Ինքիրմէնս քիչ մը տըհա_ճութիւն զգացի . բայց պէտք է որ խոստովանիմ՝ թէ չըզգացի այնչափ տրտմութիւն յանցանք ընելուս հա_մար՝ որչափ որ երբ խաբհեցայ թէ

պիտի իմացվի ըրածս, և անոր համար պիտի պատժըվիմ ես ։

Անդր. — Ես կըկարծեմ որ՝ երբեմն դուն ամենևին այլ տրտմութիւն չի քաշեցիր, հապա նոյն բանը նորէն ըրիր չիմացվելուն համար, և յոյս ունենալուդ համար՝ որ նորէն պիտի ազատիս ըրած բանդ յայտնի ըլլալէն ։

Գրիգոր. — Ո՞ւր իրաւ է՝ մայր ։

Անդր. — Հիմայ ինչ որ Գրիգոր իր վրայովը զըրուցեց նէ, ձեզմէ ալ չեմ երկբայիր ես Եղիսա ու Երմոզ՝ որ դուք ալ ունեցած չըլլաք աս կերպ բաները ։ Դուք զանազան ժամանակներ տրտմութիւն զգայիք ինծի անհնազանդ ըլլալնուդ համար ան պատճառաւը, որ վախցաք իմ սըրդողելէս՝ ու իմ ձեզի խոստացած պատիժէս. և գիտեմ որ՝ աս եղած էր գլխաւոր կամ զուցէ մի միայն պատճառը ան ձեր տրտմութիւն զգալուն ։

Հիմայ դուք ինքիրէննուդ գիտէք՝ որ կընաք աս տեսակ տրտմութիւն ու-

նենալ , և տակաւին միշտ քինծի անհնազանդ ըլլալը ուզել՝ երբոր իմ պատուիրած բանս ձեր հաճութեանը ու կամքին դէմ եղած ըլլայ :

Դուք կրնաք սա տեսակ տրտմութիւն մը քաշել , և տակաւին ուզել նորէն նոյն բանը ընել . մանաւանդ թէ որ կը խորհիք՝ որ ես ան ձեր ըրածը չի պիտի գիտնամ :

Ըս տեսակ տրտմութիւնը՝ ինչպէս դուք կը տեսնաքկոր , շատ տարբեր է Ճշմարիտ Զղջումէն :

Գրէգոր . Բայց մայր՝ յանցանք է մի Աստուծոյ բարկութենէն և իրեն մեղքի դէմ խոստացած պատիժէն վախնալը :

Նելէս . Մայր՝ ես ալ սա բանին վրայ կը խորհէի կոր :

Մայր . Տղաքս՝ սա բանը յանցանք չէ :

Թէ որ յանցանք մը ըլլար սանկ վախ ունենալը , Աստուած մեղի Սուրբ Գիրքին մէջ այսչափ չէր զրուցեր՝

որ Մեղքի դէմ իր խռովացած պատի-
ժէն փախչինք ։ Ինքը մեզ կըզգուշա-
ցունէ անկէց փախչելու , անոր Համար
որ ետքը ան ձեզ՝ քեզ Պըրճզոր , քեզ
Ե՛ղեսա , քեզ Ս՛րմոզ , Թշուառու-
Թեան մէջ կըձգէ , ու զեչին գէշը
կընէ յաւիտեանս ։ Ինքը ձեզի կըս-
տիպէ՝ որ մեղքէ ետ կենաք , զըղջաք
մեղքերնուդ վրայ . յայսերնիդ Քրիս-
տոսի վրայ դնէք , որն որ ծայրագոյն
Առաջնորդ ու փրկիչ մերն է՝ մեղքե-
րուն ապաշխարութիւն ու Թողութիւն
տալու Համար . Եւ երբ օրՃնակին հե-
տեւիք՝ Աստուծոյ կամքը ընելովնիդ ,
որ կարենաք երկինքը երԹալ , եւ ան-
տեղ յաւիտեանս երջանիկ ըլլալ ։

Ինքը Իրաւցընէ աստնիկ խրատները
չէր ըսեր , Թէ որ յանցանք ըլլար
ձեզի մեղքերնուդ Համար տրտում ե-
ղած՝ ու անոնց վրայ զղջում ըրած
ատեններնիդ ձեր վրայով խոսհելը , ձեր
ներողութենէն խայլըսելուն վրայով՝ ~

ձեր մասնաւոր բարութեանը վրայով խորհելը ։

Բայց ինչ բան որ ես ձեզի ցանկացի սորվեցունել, սա է որ՝ սա կերպ բաները խորհելով սրտմտութիւն մը ունենալէն՝ի զատ, մէկ ուրիշ կերպ սրտմտութիւն մը ունենալ շատ հարկաւոր է ։

Թէ որ ձեր ըրած մեղքերուն վրայով եղած սրտմտութեանը պատճառը միայն պատիժին վախն է նէ, յայտնի է որ դուք ճշմարտապէս զղջում չէք ըրած մեղքերնուդ համար ։ Հապա ձեր զղջումը պէտք է որ ուրիշ կերպ և էվելի զօրաւոր պատճառներէ յառաջ գայ ։

Գիտցո՛ւք թէ՝ Գրիգորը ճամբան մէկ աղքատ պզտի տղայ մը գտնայ՝ անօթի ու մրսած, որ հայր ու մայր կամ բարեկամ մը չունենայ իր վրան հոգ տանելու ։ Եւ գիտցուք թէ՝ ես Գրիգորին զրուցեմ, որ ինքը ան որբ տղան առնէ մեր տունը բերէ, և ին-

քը անոր վրայ հող տանի՝ և հայրու-
թիւն ընէ անոր ։ Սեպենք որ՝ Գրի-
գոր ալ քեռւոյին իրեն տրուած ստակին
մէկ մասը տունէ , ու ան պզտի տղին
համար հանդերձ շինէ՝ ու գիրքեր առ-
նէ , և բոլոր ան տղին աղէկ կերպով
զարգանալուն ու մխիթարութեանը
հարկաւոր եղածները տունէ ։ Ասան-
կով ան պզտի տղան շատ երջանիկ
ըլլայ , մեր հետը բնակելովը ։ Եւ
Գրիգորն ալ մեծ բերկրութիւն ու-
նենայ ան խորոտին (Գրիցուք թէ ա-
սանկ ըլլայ իր անունը) աղէկ վարք
ունենալուն վրայ , և իր զրուցածին
հնազանդ ըլլալուն վրայ ։

Ես Գրիգորին զրուցեմ որ , նայի
ինքը թէ կրնայ մի կատարեալ խո-
րոսք , և աս մասին մէջ ալ անոր հայր
ըլլալ ։ Գրիգոր ալ աս գործին հաճի
և ան բանին ձեռք զարնէ մէկ մեծ
հաստատուն մտադրութեամբ մը ։
Բայց ժամանակ ըլլայ որ , Գրիգոր
խոստացած ըլլայ Եղիսային ու Երմո-

Ինքը մտմտայ թէ՝ ինչ զըւարճալի ժամանակ մը կրնայ ունենալ ան պատկերները տեսնալու, նաև շատ փափաքի՝ որ անոնք տեսնայ : Ու աս ատեն ինքը մտմտայ ցամաք հացին ու Ջուրին վրայ՝ որ բոլոր օրվան իր կե-րակուրը պիտի ըլլայ թէ որ ան գիր-քին ձեռք զարնէ նէ : Ըսանկ խորհե-լով ինքը աս բանը չուզէ ընել՝ գիտ-նալով որ իրիկվան սեղանը աղնիւ կերակուրներ պիտի ըլլայ՝ կարկան-դակ՝ և անուշեղէն բաներ, որ ինքը շատ կըսիրէ : Ասկէն զատ ալ մտմտայ թէ՝ գիրքը առնելովը յանցանք գոր-ծած պիտի ըլլայ, գիտնալով որ ինքը առաջուց վնաս ըրեր էր ուրիշ գիրքի մը պատկերներուն, և կարելի է որ հիմայ աս գիրքին ալ վնաս կընէ . ո-րուն համար ինքը լսած ալ ըլլայ թէ՝ ան գիրքը շատ ստակի արժէք ունի : Ու աս բաներէն ետքը միտքը բերէ թէ՝ ինտոր Գրիգոր իրեն բարիքներ

ըրած ունի , և թէ՝ արժան է որ ինքը անոր հնազանդ ըլլայ ։

Եւ աս բանին վրայ ինքը խորհելէն ետ չի կրնար կենալ ։ Քանզի ներսիդիէն իր խղճմտանքը յայտնի կըզգուցէ իրեն՝ թէ Գրիգոր աղէկ ըրաւ՝ որ ան գիրքը իրեն արգիլեց՝ որ չառնէ , և որ՝ շատ աղէկ պիտի ըլլայ , որ ինքը ամէնուն հետ մէկտեղ ան գիրքը տեսնայ՝ որ ատեն որ Գրիգոր ալ բացատրելու կըլլայ իրենց ան պատկերներուն վրայով ։

Բայց կանք որ՝ իր հետաքրքրութիւնը էվելօք շատցած ըլլայ ան գիրքը տեսնալուն բաղձանքովը ։

Սակայն ալ իր խղճմտանքին զըրուցած բանին չի նայի թէ՝ պէտք է իրեն որ Գրիգորին հնազանդի ։ Հապա առնէ ան գիրքը , ու վար նըստի կրակին քովը մէկիկ մէկիկ ան պատկերները նայելու ։ Գիրքն ալ անանկ մեծ է , որ ինքը աղէկ մը անիկա բռնելու ճարպիկութիւն չունի ։

Հիմայ գիրքը ձեռքէն ելնայ կըրա-
կին մէջը , և անիկա դուրս հանելու
կրնայէն առաջ շատ մը էրի ; ու ան
պատկերներէն շատը աւրըվի՝ անպի-
տան ըլլայ ․ և մնացածներուն ալ
մէյմէկ քիչ վնաս ըլլայ ։

Ու միջոցին Գըրիգոր ալ ներս
մտնայ ։

Ու հիմայ Խորոսը բոլորովին շը-
փոթութեան ու խռովութեան մէջ
ըլլայ ․ իր բռանը ինքը խոստովանի ;
և իր աչքվ ըններէն արցունք թափելով
զըրուցէ թէ ինչպէս արտուած է , ինտու՞ր
շատ արտամութիւն ունի ինքը՝ ան բա-
նը պատահելուն վրայ ։

Հիմայ դիցուք թէ տը՛ղաքս , ան
Խորոսը միայն անոր համար տրտմու-
թիւն ունենայ՝ որ կըրսեցնայ թէ Գը-
րիգոր իր վրայ սրդողած է ․ և որ՝ ին-
քը մինչև իրիկուն միայն ցամաք հաց
ու ջուր պիտի ունենայ , և չի պիտի
կրնայ վայելել իրիկվան ան ազնիւ

կերակուրները և անուշեղէն բանե-րը ։

Ըսենք թէ իր խորհիլը և վախնալը միայն պատիժին համար ըլլայ . ան միայն ըլլայ իր արդարութիւն ունենալուն պատճառը ։ Ինքը սոսկ համար տրտում չըլլայ՝ որ յանցանք գործեց անհնազանդ գտնըլվելովը Գրիգորին մէկ աղէկ ու արդար պատուէրին , որ իրաւունք ունէր ան հրամանը ընելու իրեն , և որ՝ այնչափ բարերարութիւն ալ ըրած էր իրեն ։ Ինքը չի տրտմի ան քրեն գործած թշուառութեանը վրայ՝ որ Գրիգոր պիտի զզար սաստիկ մէկ մեծագին գիրքի մը վնաս եղածը տեսնալով ։ Ինքը տրտում չըլլայ ան ձախորդութեանը և ան բոլոր տղոցը յայտնի զըկըվելուն վրայ և իրենց բաղձանքը կորսընցունելնուն վրայ՝ որ կուզէին ան գեղեցիկ պատկերները նայելու ։ Ինքը տրտում չըլլայ սաստիկ ինքըզինքին ալ և ուրիշներուն ցաւցընելուն վրայ իր մէկ անհը-

նազանդ ընտանութիւն ունենալը՝ որ մեղք մըն է . որն որ իրենք առաջ անգամ մը ցուցուց , և կըկարծըվի որ իրենք նորէն պիտի ընէ առանց անհընազանդութիւններ ։ Իրենք տրտում չըլլայ անոր համար՝ որ մէկ չար օրինակ տըւող մը եղաւ մէկաւ տղոցը , և որ կարելի է Թէ անոնք ալ անկէց պիտի սորվին առանց մեղքեր գործելը , և իրենց մօրը ու վարժապետին պատուէրներուն անհնազանդ ըլլալը ։ Հապա իրենք միայն անոր համար տրտում ըլլայ՝ որ բոլոր օրը իրեն կերակուր ցամաք հացէն ու ջուրէն ՚ի զատ ուրիշ բան պիտի չըլլայ , և պիտի կորսընցունէ ան կարկանդակը ու անուշեղէն բաները ։

Գանք որ՝ հիմայ քեզի հարցունեմ Տ. Գրիգոր , դուն ի՞նչ պիտի խորհիս առանց մէկ անհնազանդութեան գործքի մը վրայ , և առանց մէկ մեծագին գիրքի մը վնասելուն համար եղած սա տեսակ տրտմութեանը վրայ ։

Պօլէմօն . Պէտք է որ զբօսցեմ հրաւ_ մանչերուս մայրը . Ես կիմանամ՝ որ ան_ տանիկ տղայ մը՝ որուն համար որ ես այսչափ աշխատութիւններ ըրի , անիրաւ շատ մէկ չար տղայ մըն է՝ և շատ ան_ առերախտ է իրեն երեսն վրայ ըրած բոլոր իմ բարերարութիւններուս դէ_ մը :

Եւրէդ . Ես անոր լման մէկ շաբաթ մը կերակուրի տեղ միայն ցամաք հաց ու ջուր կուտամ :

Եղիսա . Ես սա կերպով բան մը չեմ ընէր . Հապա իսկո՛յն անիկա տունէն դուրս կըհանեմ , և ալ անոր վրայ հոգ չեմ ըներ :

Սօֆի . Ե՛րմոզ՝ Ե՛ղիսա , ձեր զրու_ ցած խօսքերն մէջը յայտնի կերևայ_ կոր՝ որ դուք աղէկ բնաւորութիւն մը չունիք ներախղինիդ :

Ան տղան իմ օրինակի համար ը_ սած դիպուածովս՝ սեպենք որ , մեծ յանցանք ըրաւ . բայց կարելի է որ անկէց ալ եղեր շատ գէշ բան մը ը_

նէ ։ Այս իմաստ կերպով պատմութեան նպատակը սոսկ այն տղին գիրքը առնելուն վրայ կամ խղճին անհոգ ըլլալուն վրայ ։ Եւ այն եղած վնասներուն վրայ չէր , որ դուք միտքերնիդ աս բաներուն վրայ բերիք ։ Հապա՝ ես աս կերպ պատմութիւն մը ընելովս ձեզի , ուզեցի որ նայիք դուք՝ թէ այն տղան ինչ տեսակ տրտմութիւն ունեցաւ . որ ասով դուք կարենաք տեսնալ՝ թէ ինտո՞ր բոլորովին Ընծասէր Տրտմութիւն մըն էր անոր ունեցածը . և գիտնաք թէ՝ այն կերպ տրտմութիւնը իր ներսի զգացմանը մէջ մէկ աղէկի փոխվիլ մը չի ցուցըներ ։ Այն տրտմութիւնը չի ցուցըներ թէ , ուրիշ անգամ աղէկ և վայելուչ կերպով պիտի ընէ ինքը՝ երբոր պատեհութիւն ունենայ՝ և երբոր կարծիք չունենայ որ ըրածը պիտի յայտնըվի ։

Ու հիմայ դուք ամէնքդ ասանկ անձնասէր տրտմութեան մը անպի-

տան և անօգուտ ըլլալը հասկըցաք , և խնդրեցինք մէկ հաստատ առա-ձնութիւն մը ցուցընէք անոր վրայ : Այս արդարև արժան է՝ որ դուք աս կերպ քանի վրայ ստուգութիւն ցուցընէք : Մնաց որ՝ կըվախենամ թէ Երմոգն ու Եզեկան ալ պզտի ատեն հետ խառնութեանը պիտի վարուին , թէ որ անիկա իրենց հաղորդութեանը տակ ըլլար նէ :

Վերջապէս՝ սիրելի՛ զաւակըներս , բոլոր աս գրուցած խօսքերուս վրայ դուք աղէկ մը մտմտացէք , և հասկըցէք՝ որ ձեր ըրած տրտմութիւնը Անձնատիրական է , թէ որ մեղքերնուդ համար տրտմութիւն քաշած ատեններդ՝ միայն Աստուծոյ ան մեղքերուն դէմ խոստացած պատիժին նայելու ըլլաք նէ :

Ասանկ մէկ տրտմութիւն մը չէ ցուցըներ , որ ձեր ներսիդին աղէկի դառնալու մէկ փոփոխութիւն մը կայ : Քանզի՝ թէ որ Աստուած մեղքի դէմ

պատիժ խոստացած ըլլար , կամ թէ որ ձեզի կարելի ըլլար հաւատալ թէ՝ ինքը բնաւ մեղքերնիդ չի պիտի իմանայ , ալ սա՛ կերպ ա՛նձնասիրական տրտմութիւնը ձեզի մեղք գործելէն չի պիտի զգուշացունէր :

Ա՛յսչափ մեր խոստակցութիւնը ալ սովորականէն շատ երկար եղաւ : Վաղը իրիկուն նորէ՛ն աս նիւթին վրայով կը խօսինք :



# ԳԼՈՒԽ Ը:

*Մար անգամ Ժիլը մը խորհրդականիը, ևսան ը-լլած քաղցրն յանդգան ըլլալը իմանալը՝ ա-տանկ ճշմարիտ Սանկրատօ եղած էր այս : Ո՛չ իմաստակէ եղած Սանկրատօյը՝ ժողով մէջ ղէ ծզէլու, և վ[ա]րպետած մեկնելու՝ ու անոր հնազանդերելու հաւատար աւանդապահութե-նէն էժէլէ քան մին է.*

Մօսյը · Գրիգո՛ր, ան տղան՝ որուն համար որ կարծէիք ունենէինք թէ անցած շաբթու քու զմեռլինդ գողցեր էր, ասօր անիկա հօս եկաւ օրհասականին, ու եա բերաւ ան զմեռլինը :

Գրէկօր · Սա՛յր՝ խոստովանեցաւ որ ինքը գողցեր էր անիկա :

Մօսյը · Այո՛՝ խոստովանեցաւ : Ը-սաւ որ ինքը շատ տրտմութիւն զգացեր էր անիկա գողնալուն համար, և կըյուսար որ եա թողութիւն տամ իրեն, և մեկու մը չի զրուցեմ ան բանին վրայով :

Տիկին · Աղջիկ · կարծեմ թէ մայրդ՝ ան տղան խելապէս զղջայ իր ըրածին վրայ :

Աղջ · Հաստատ չեմ կրնար զրուցել թէ չի զղջայ · բայց շատ երկբայութիւն ալ ունիմ անկէ ատ բանին վրայով :

Գրիգոր · Ինչո՞ւ մայրը :

Աղջ · Անոր համար որ՝ մեղքի խոստովանութիւնը չի ցուցըներ միշտ՝ թէ ան իր մեղքը խոստովանող մարդը ճշմարտապէս զղջում ըրած ըլլայ անոր վրայ : Նո՛յն կերպով առաջ ալ ես աս տղէն իր յանցանքը խոստովանիլը լսեցի : Երբոր ինքը՝ ուրիշներուն ինչ աչքով իր վրայ նայելու կերպէն կիմանայ թէ իր վրայով կասկած ունին , և կամ իր ըրած բանին յայտնի ըլլալը շատ հաւանական է , կըսկըսի այս բանին վրայ խորհիլ թէ ինչ պիտի ընէ :

Երբեմն՝ ինչպէս գիտեմ ես , անիկա կըհաստատէ իր մտքովը՝ թէ բանը

բոլորովին ուրախնայ․ և ան կերպով կըյուսայ որ՝ իր ստութիւնը զինքը ապահով կընէ ։ Ուրիշ ատեն ալ կը վախնայ թէ՝ աս կերպով չըլլար, իր ստութիւնը կըյայտնըվի․ անոր համար իր յանցանքը կըխոստովանի, որպէս թէ անիկա պատիժէն փախչելու մէկ ճամբայ մը կըլլայ իրեն ։

Հիմայ թէ որ այսպէս խորհեցաւ ու զգաց իրեն ասոր հոս գալուն ատենը նէ, և անանկով խոստովանեցաւ որ ինքը ան զմելինը գողցաւ, ձեզի ամէննուդ յայտնի է որ՝ անիկա իր մեղքին վրայ ճշմարիտ Զղջում ըրած չէ ։ Աս կերպով անոր վրայ աղէկի փոխվելու նշան մը չեղաւ․ անոր վրայ չերևցաւ անանկ փոփոխութիւն մը, որ իրեն օգուտ ընէ ալ անկէ ետև գողութիւն ընելէն զինքը զգուշացունելու ։

Սիլվա․ Բայց մեյը, Հրամանքդ մեզի սորվեցուցիր որ՝ բնաւ պէտքը չէ մեզի ուրանալ մեր ըրած յանցան-

քը, հապա պէտք է որ անիկա շուտով հրամանքերդ խոստովանինք ։

Այսր. Ասանկ ըսի անդջերկս. և արժան է որ ասանկ ընէք դուք ։ Աղէկ ըրաւ ան տղան, որ ասօր եկաւ օրհասրակին՝ նոյնպէս խոստովանեցաւ իր յանցանքը ։

Ճշմարիտ Զղջումը ամէն ատեն ձեզի պէտի տայ ջնորդէ յանցանքներդ խոստովանելու ան մարդուն՝ որուն որ դուք անհնազանդ եղաք, կամ որուն դէմն որ դուք մեղք գործեցիք նէ ։ Բայց կըլլայ որ դուք աս խոստովանութիւնը կընէք՝ և Ճշմարիտ Զղջում չէք ունենար, ինչպէս աս կերպ ըլլալ հաւանական է ան տղին խոստովանութիւնը, որն որ ասօր կէսօրին հոս եկաւ ։

Ան շարժառիթները կամ պատճառները՝ որուն համար խոստովանանքը կըլլըվի, կըցուցնեն թէ՝ արդեօք ան խոստովանութիւնը Ճշմարիտ Զղջումէն յառաջ կուգայ՝ թէ չէ ։

Այս հիմայ միայն Թէ ո՛րչափ սա կը-
խորհիմ, որ դուք շատ անգամ յայտ-
նեցիք ինծի ձեր ըրած յանցանքը ա-
նո՛ր համար որ՝ կըվախնայիք Թէ ես
ան բանը անշուշտ պիտի իմանամ, և
անոր համար որ՝ կուզէիք դուք Թէ ան
ըրածնիդ խոստովանելով մէկ անքա-
սիր պարծանք մը ունենաք ։ Խորհե-
ցէք ալ նաև, որ ան խոստովանիլը
շատ Թեթև պիտի ընէ ձեր պատիժը,
կամ գուցէ Թէ բոլորովին պատիժէն ալ
ազատ պիտի ընէ ձեզ ։ Այս երբեմն ալ՝
երբոր ան բանին յայտնի ըլլալուն մէկ
վախը որ չունէիք, խղճմտանքնիդ
ձեզ անհանգիստ ըրաւ ։ Գիտէիք որ
յանցանք գործած էք, և ան պատճա-
ռաւ Թշուառութիւն կըզգայիք ներ-
սերնիդ ։ Կըխորհէիք որ ձեր ունեցած
Թշուառութիւնը պիտի նըւազի՝ Թէ
որ յանցանքնիդ խոստովանելու ըլլաք
նէ ։ Այս գուցէ միտքերնուդ կանցնէր
որ՝ յանցանքնիդ պիտի մէկ դի երԹայ
անիկա խոստովանելովնիդ ։ Եւ Թէ՝

գրեթէ ես ձեր վրայ անանկ համա֊րում մը կունենայի՝ ինտոր որ ձերինն յանցանք չըրած ատենը կունենամ նէ։

Հիմայ թէ որ դուք միայն աս պատ֊ճառներուն համար խոստովանեցաք ձեր ըրած յանցանքը նէ, ան խոս֊տովանութիւնը մէկ ճշմարիտ Օղջու֊մէ մը յառաջ եկած չեղաւ, և դուք ալ գիտէք որ այնպէս է ։

Պօլինէոր ․ Ա՛յր՝ կընայիմ որ հրա֊մանքդ մեր ներքի զգացումներուն վրայով շատ աղէկ տեղեկութիւն ու֊նիս ․ և կընայիմկոր ալ, որ ճշմարիտ Օղջումը էվէլօք մէկ երևելի բան մըն է եղեր ։

Անդր ․ Իրաւ է ատ տըպաս ․ և կու֊զեմ որ դուք ամէնքդ ալ իմանաք՝ որ աս ասանկ է ։ Ե՞ս իրիկվան զրուցած բանս ձեզի ցուցընել մըն էր, որ֊պէս զի դուք կընաք որ մեղքերնիդ խոստովանիք Աստուծոյ, և աս ընելու ատեննիդ կընաք որ իմանաք ձեր յան֊ցանքը ըլլալը Աստուծոյ առջևը, և

տակաւին ճշմարիտ ։ Ողջո՛ւմ չէք ու-
նենար ձեր սրտերուն մէջը ։

Կարելի է որ՝ դուք ամէն առ թանե-
րը բոլորովին կընէք ան պատիժին
վախէն՝ որն որ Աստուած խոստացեր
է մեղքին դէմ ։ Գո՛ւք կըյուսաք որ
մէկ կերպով մը կամ ուրիշ կերպով
մը ձեր խոստովանանքին պատճառո-
վը Աստուծոյ ձեր վրայ ունեցած սըր-
դողկութիւնը պիտի քիչնայ, և թէ
անով իրեն ձեզի տըւած պատիժն ալ
պիտի քիչնայ, կամ գրեթէ ամենևին
չի պիտի պատժէ ձեզ ։ Մ՛եղքը՝ որ
Աստուծոյ կըխոստովանիք ոչ ուրիշ
պատճառներու համար՝ հապա միայն
առ թաներուն համար նէ, ան խոստո-
վանութիւնը չի ցուցըներ որ ձերներ-
սի զգայութիւնները աղէկ փոփոխու-
թիւն մը ունին Աստուծոյ վրայով,
կամ թէ դուք Աստուած էվելօք պիտի
սիրէք, կամ ալ առջինէն աղէկ կեր-
պով անոր պիտի հնազանդիք ։ Աս-
տուած ձեր սիրտերուն կընայի

ինքը գիտէ ձեր ամէն խորունկ խոր-
հուրդները ու զգացումները ։ Դուք
քան մը անկեց չէք կրնար ծածկել ,
Թէ որ միտքերնիդ իրեն կը խոստովա-
նիք , ինքը գիտէ ինչ պատճառի հա-
մար ըլլալը ան ձեր խոստովանանքը ։
Չէք կրնար դուք անիկա խաբել ,
ինչպէս որ ատեն ատեն իր կը խաբէք
նէ ։ «Պահվըտելու տեղ մը չի կայ
անոնց՝ որոնք որ անիրաւութիւն կը-
գործեն» ։ (Յոբ. ԼԴ. 22 ։) «Մանզի
զի Տէրը ամէն սիրտերը կը քննէ» ։
(Մնաց. ԻԸ. 9 ։)

Աս խօսքերը դուք միտքերնիդ բե-
րէք սիրելի՛ տըղաքս , և աս ալ թէ՝
մեղքի խոստովանանքը որ Աստուծոյ
կընէք՝ որչափ անթերի և անպակաս
եղած ըլլայ , թէ որ անիկա սոսկա-
ղէս պատիժին վախուն համար է նէ՝
ան խոստովանութիւնը մէկ ճշմարիտ
Զղջումէ մը եղած չէ ։ Պէտք է որ՝ ան
խոստովանութիւնը մէկ ուրիշ կերպ
ու երկնային պատճառներէ եղած ըլ-

լայ, ինչպէս ա՛նկեց եաւ և ձեզի պի֊տի ցուցընեմ:

ԳՐԻԳՈՐ · Մա՛յր, ուրիշ սուտու֊մուտ զղջման տեսակներ կա՞յ մի:

ՄԱՅՐ · Գրիգո՛ր, սա հարցմունքիդ ես պատասխան տալէս առաջ՝ քեզի բան մը պիտի հարցունեմ: Գիտես որ ինտո՛ր հիւանդ էիր դուն անցած տա֊րի. և մենք ամէնքս կըխորհէինք որ դուն պիտի մեռնիս. դուն ալ ինքիր֊մէդ ասանկ կըմտմըտայիր: Մ՝իտքդ կուգա՞յ մի՝ որ դուն ինտո՛ր տրտմու֊թիւն ունիմ՝ կըսէիր ինծի, Աստու֊ծոյ դէմ մեղք գործած ըլլալուդ հա֊մար:

ԳՐԻԳՈՐ · Մ՝իտքս կուգայ մա՛յր, և ան ալ թէ՝ ինտո՛ր ես անատեն Աս֊տուծոյ խոստմունք ըրի իմ աղօթքնե֊րուս մէջ, որ եթէ ինքը իմ կեանքս բաշխէ՝ ես ա՛լ մեղք գործելը մէկդի պիտի ձգեմ, և պիտի սիրեմ ինքը՝ ու հնազանդիմ իրեն:

ՄԱՅՐ · Անատենը կարծեցի՞ր՝ որ

դուն մեղքիդ վրայ մէկ ճշմարիտ զղջում մը կընծէիրկոր ։

Պոլիէկտոր ։ Կարծեցի մայր ։

Մայր ․ Ի՞նչ պատճառի համար ա_նանկ կարծեցիր ։

Պոլիէկտոր ․ Ինծի այնպէս կերեւար թէ ըղձացի ․ քանզի զօրաւոր առաջա_դրութիւն մը ըրի՝ որ ապագայ կեան_քիս մէջ զԱստուած սիրեմ ու անոր հնազանդ ըլլամ ։

Մայր ․ Բայց հիմայ այն առաջա_դրութեանդ վրայ ի՞նչ կըխորհիս տղայս ։

Պոլիէկտոր ․ Ա՜խ մայր , ո՞րչափ շատ անգամ եմ այն ըրած խոստումնքս կոտ_րեր եմ ։ Ամչնամ եմ այն խոստումն_քը միայն անոր համար ըրած եղայ , որ շատ կըվախնայիկոր թէ՝ պէտք մեռնիմ եմ ։

Մայր ․ Թէ որ ա՛ն էր միայն պատ_ճառը՝ որուն համար որ դուն այն խոստումնքը ըրիր , ուրեմն չէրեւար՝

որ դուն մեղքերուդ վրայ մէկ ճշմա-
րիտ Զղջում մը ըրած ըլլաս ։

Ճշմարիտ Զղջումը տարբեր բան մըն է մէկ սոսկ զօրաւոր առաջադրութիւնէ մը կամ դիտաւորութիւնէ՝ որն որ դուք կ'ընէք , մեղանչելը մէկ դի ձգելու և զ՚Աստուած սիրել սկըսելու ու անոր հնազանդելու համար ։

Ասանկ մէկ առաջադրութիւն մը կ'ընայ ըլլալ մեղքին ինչ ըլլալը պայծառ ու իրաւկէս չի տեսնալով ալ ։ Ան մարդը՝ որ կ'ընէ ան առաջադրութիւնը , կարելի է չի պիտի դայ թէ՝ ինտոր մէկ յանցաւոր մեղաւոր մըն է Աստուծոյ առջևը ։ Կարելի է որ անիկա չի պիտի տեսնայ ան զինքը դատապարտող օրէնքին սուրբ՝ արդար ու աղէկ ըլլալը ։ Կարելի է որ անիկա չի պիտի իմանայ իր ըրած մեղքին գէշութիւնը , որ ինքը գործած է անանկ մէկ Աակի մը դէմ , որն որ իրաւունք ունի պահանջելու ան իր կատարեալ սէրը և դէպի իրեն եղած հնազանդու-

թիւնը , և որ՝ ինքը այնչափ բարու_
թիւն ու երկայնմտութիւն ցուցըցեր
է անոր ։ Կարելի է որ ինքը չի պիտի
զգայ՝ թէ իր սիրտը Աստուծոյ Հակա_
ռակ է ։ Կարելի է որ անիկա չի պիտի
իմանայ իր կարօտութիւնը , յանցանք
ունենալը և կորուստը ու ապագայ
թշուառութիւնը , անանկ որ՝ պէտք էր
որ ինքըզինքը սոսկ Աստուծոյ շնորհ_
քին վրայ ձգէ Յիսուս Քրիստոսի
ձեռքովը , և մի միայն ան փրկիչին
վրայ ապաւինելովը իր մեղքերուն թո_
ղութեանը Համար և Աստուծոյ Հետ
Հաշտըվելուն Համար ։ Կարելի է որ
մէկ քանի ուրիշ զգացումներ , մէկ քա_
նի ուրիշ շարժառիթներ իրեն ճամ_
բայ բացին ան առաջնորդութիւնը
ընելու որ ինքը կըկարծէ թէ ան ը_
նելով Աստուծոյ վրայ սէր ու Հնա_
զանդութիւն ձգելու սկիզբ մը եղաւ
իրեն ։ Բայց ինչպէս և իցէ՝ ան զգա_
յութիւնները թէ որ իրենց մէջը չու_
նենան ան մեր առջի ըսած զգայու_

թիւնները ու շարժառիթները նէ, անոր առաջադրութիւնը ճշմարիտ Օղջումով եղած չէ ։ Եւ ահա առ նիւթին վրայ խաբուելու մեծ վտանգ մը կայ մարդոց ։ Դուն իրաւունք ունիս Գր-րի՛գոր, որ կըվախնաս թէ՝ խաբուեցար սա առաջադրութեանդ նայելով, որն որ հաստատեցիր հիւանդ եղած ատենդ ։

Եւ առողջութեան ատենդ ալ ինքըզինքդ աղէկ մը քննելու մեծ կարօտութիւն ունիս, որ նայիս թէ սիրտդ քեզ չի խաբէ ։ Վ.անզի Աստուածաշունչը՝ մեզի յայտնի կըզըրուցէ թէ՝ “Ամէն բանէն էվէլ (մարդուն) սիրտը մութ բան մըն է”. (Երեմ. ԺԷ. 9 ։)

Երմո՛գ՝ Ես կուզէմ հիմայ քեզի խնդիր մը հարցունել ։ Արբեմն երբոր դուն յանցանք գործեցիր, ու վախցար իմ սրդողելէս նէ, դուն միտքէդ չանցուցի՞ր մի շատ հաստատ կերպով, որ մէյմալ բնաւ դուն անանկ բան մը չի պիտի ընես ։

Աղջիկ · Ո՛չ, մայր՝ շատ անգամ ։

Մայր · Ի՞նչ կերպ զգացում ունե–
ցար դուն անանկ հաստատ խորհուր–
դեր կամ առաջադրութենէդ ետքը ։

Աղջիկ · Շատ մխիթարութիւն զգա–
ցի ներսիդիս · քանզի ինծի անանկ ե–
րեւցաւ, որ ես բոլորովին ա՛լ մէկ ա–
զէկ տղայ մը պիտի ըլլամ, ու անկէ
ետեւ մէկ գէշ բան մը չէ՛ պիտի ընեմ ։

Մայր · Չըզգացի՞ր ներսիդիդ, որ
քուն մէկ շատ աղէկ բան մը ըրած ե–
զար՝ անանկ մէկ առաջադրութիւն մը
ընելուդ համար ։

Աղջիկ · Այո՛, մայր՝ ինտո՞ր իմացար հրա–
մանքդ, որ ես աս կերպ զգացում ու–
նեցայ ներսիդիս ։ Քանզի ես հրա–
մանքիդ ամենեւին ատիկա զրուցած
չեմ ։

Մայր · Նո՛յն ժամանակը՝ ճշմարտա–
պէս տրտմութիւն քաշեցի՞ր մի դուն
յանցանք գործելուդ համար ։

Աղջիկ · Ո՛ւ, Ջի՞ բերանը . տրտմու–
թիւն քաշեցի մայր՝ վախնալուս հա–

մար որ հրամանքդ կիմանաս անհիկա ։ Բայց առաջադրութիւն ընելէս ետ֊քը կըխոստհիմ որ ալ այնչափ տըրտ֊մութիւն չըզգայի ։

Անոյշ · Աղէ՛կ՝ Ա՛րմոզ , բայց ետքը դուն ի՞նչ կերպով ան քու ըրած ա֊ռաջադրութիւնդ պահեցիր ։

Արմոզ · Կըպարտաւորիմ զըրուցելու մա՛յր , որ անոնք շատ աղէկ կերպով չի պահեցի ։

Անոյշ · Ա՛խ զա՛ւակս , կըյուսամ որ դուն և մէկալ տղաքն ալ չէք մոռ֊նար ինչ որ զըրուցելու եմ աս իրիկուան մեր խօսակցութեանը վերջը · որ ա֊սոնք են ։

Մ՝եղքէ մէկ դի կենալու ու զԱ՛ս֊տուած սիրելու և անոր հնազանդե֊լուն առաջադրութիւնները , ձեզի օգտակար չի պիտի ըլլան՝ թէ որ ա֊նոնք յառաջ չի գան ձեր մեղքերուն վրայով եղած սրտառուչ մէկ զղջու֊մէ մը , գիտնալով որ յանցանք գոր֊

ծած էք մէկ իմաստուն՝ սուրբ ու բա-
րերար Աստուծոյ դէմը ։

Ան առաջադրութիւնները ձեզի օգտակար չի պիտի ըլլան, թէ որ դուք չունենաք նաև ներսիդինիդ մէկ հաստատ անկեղծ յոյս մը Յիսուս Քրիստոսի վրայ՝ որն որ ձեր մի միայն փրկիչն է . և թէ որ անոր վրայ չապաւինիք՝ թշուառ՝ յանցաւոր՝ դատապարտելի մեղաւորներուն պէս, որ կարենաք մեղքերնուդ ներողութիւն գտնալ՝ և Աստուծոյ աչքին հաճելի ըլլալ անոր միջնորդութիւնովը ։

Ան առաջադրութիւնները ձեզի օգտակար չի պիտի ըլլան, թէ որ անոնք ձեր խելքովը եղած են նէ ։ Պէտք է որ՝ Քրիստոսի միջնորդութիւնովը Աստուծմէ խնդրէք, որ իր Սուրբ Հոգին ձեզի տայ, որ անով նորոգվիք, ու զօրանաք ան ձեր առաջադրութիւնները պահելու ։

Ուրեմն «Ասկէ ետև զօրաւոր եղիք Տէրոջմով ու իր կարողութեանը զօ-

րութիւնովը։" (Առակ. Ժ. 10)։ Նա-
եւ կըյուսացվի՝ որ ան ձեր ըրած բա-
րի առաջադրութիւնները չեն նմանիր
առաւտրըկյան մշուշին՝ և կանուխ եկած
ցօղին, որ (քիչ մը ժամանակէն ետքը)
կանցնի"։ (Ովսէ. Զ. 4)։



Տղջ. Իրաւ որ մայր՝ անիկա ը-րաւ այս բանը. քանզի անոնք ամէնը ղուրս էր հաներ՝ և կըխառնըշտը-կէրկոր. որ անոնք նորէն կարգաւ շարելու համար շատ ժամանակ պէտք անցունես հրամանքդ:

Մայր. Տըրմնգ, ինտոր համար դուն կըրցար այս բանը ընել, որ առաջուց ինծի ըրուցեցիր թէ շատ արտամու-թիւն ունեցեր էիր անգամ մը ան պատկերագարդ գիրքը վար առնե-լուդ՝ և ինծի անհնազանդ գտնըվե-լուդ համար:

Տղբդ. Բայց մայր՝ հրամանքդ ին-ծի չարգիլեցիր, որ ես չառնեմ ան թուղթերը:

Մայր. Ճշմարիտ է այդ՝ բայց երբ քեզ արգիլեցի որ ան պատկերագարդ գիրքին ձեռք չի զարնես նէ, պատ-ճառներ ցուցըցի քեզի, որ ան խօ-քերովս դուն կըհասկնայիր իմանալ նաև չի մօտենալը ան գրպանոցին մէջի թուղթերուն: Այս ըրուցեցի քեզի, որ

կուզեմ թէ մասնաւորապէս դպրատու-
նին մէջ քու ամէն բան ուսուցանողը կար-
գով պահպանէին · և որ՝ պատ քու ուսուցած
հետաքրքրութիւնդ՝ որ՝ կուզես, ամէն
բաներու խառնաշփոթէն՝ ձեռք վարժու-
լովդ, ես վախցայ թէ՝ մինչև ցաւ պիտի
պատճառէ վնաս մը ընելովդ ։

Ներսէս · Մ՛այր՝ շատ կըցաւէիմ որ
որ ես ան թուղթերը դուրս հանեցի ·
երանի որ տրտում եմ ըրածիս վրայ ։

Մայր · Բայց քու այս բանին համար
ունեցած տրտմութիւնդ քեզ պիտի
զղջացունէ՞ մը , որ ալ ձեռք չի
զարնես գրատունը մէջի եղած բանե-
րուն ։

Ներսէս · Կըյուսամ որ մայր՝ պիտի
զղջացունէ ։

Մայր · Աղէկ, պիտի որ ուսանանք · բայց
սորվէ՛ տրտում ան քու ըրածէդ, որ
մէկ մանաւոր կերպով յանցանք մը
ըներէն ես կըհասկնամ կենալ ։ ու ատ
կուլին ճշմարիտ Օղջում չես ունե-
նար ։

Թէ որ դուն ան պատահերադարձ դէպքը ամենալաւը ինծի անհնազանդ ըլլալուդ համար աղէկ տեսակ տրտ- մութիւն մը ունեցած ըլլայիր նէ , դուն ալ ձեռքդ չի պիտի զարնէիր ան- տեղի թուղթերուն ։

Ճիշդ աս կերպով ա՛հա տղա՛քս , կարելի է որ կը դադրէք դուք մէկ մասնաւոր մեղք մը գործելէն Աստու- ծոյ դէմ , և այնպէս պիտի կարծէք թէ՝ ճշմարտապէս զղջում ըրած էք դուք ան մեղքին վրայ ։ Բայց ճշմա- րիտ զղջում չի կրնար ըլլալ աս ։ Թէ որ դուք ուրիշ կերպ բաներով նոյն- պէս մեղքի մէջ յառաջանալու ըլ- լաք նէ ։

Թէ որ տղայ մը ուրիշ տեսակ զա- նազան բաներու մէջ իր հօրը կամ մօրը դէմ շարունակ անհնազանդ գտնըւի , բայց իր սովորած մէկ մաս- նաւոր բանին մէջ ըրած անհնազան- դութենէն ալ ետ կենայ նէ ; անկէց չերևար ան տղուն նոյն մասնաւոր բա-

նոյն համար ըրած խնդանքին վրայ Ճշմարտապէս Օղջում ունենալուն փորձը ։

Ասկէց ՚ի զատ , քանի որ դուք ալ եկեր էք կըմեծնաք , ձեր յօժարութիւնը մէկ քանի բաներուն վրայ կըփոխուի ։ Օրօրինակ , հիմայ Երմոգէն շատ դժարը կուգայ իր խաղալիկները ձգելը ։ Իսկ որ ես մէկ պատճառով մը արգիլեմ անիկա որ չի խաղայ անոնց հետը նէ , ինքը ան բանը պիտի համարի մէկ խիստ պատուէր մը · և կըվախնամ որ եկելօք պիտի գըրգռի ան իմ պատուէրս կոտրելու ։

Բայց սակայն՝ Թէ որ մենք երկար կեանք ունենալու ըլլանք մինչև որ ինքը տասնըութը տարվան ըլլայ , և ալ արգիլեմ իրեն որ ան խաղալիկներուն հետ չի խաղայ , անատեն ամենակին իր անհնազանդ գտնըվելուն վըտանգ մը չըլլար · ինչու որ ալ իր միտքը յօժարութիւն չունի ան բաներուն վըրայ ։

Գանք որ՝ տամնրտաւթը մարմնոյ պատահմունքներէն ալ աւելի անանկ բաներ ունին, որ այնչափ կըսկսեն՝ և կրբաղձան անոնց, որչափ որ Աշրմոզ Հեմայ կրակիրէ էր. խաղալիկները. և զուցէ անատեն Աշրմոզ ալ նոյն բաները պիտի սիրէ եւմէլօք, անանկ որ իր մօրը Հրաման ըրած ատենը որ մեկզի դնէ անոնք, դժուար բան մը պիտի ըլլայ ան իրեն, և նեղսիրիէն պիտի յորդորվի ինծի անհնազանդ ըլլալու։

Ասոր տե՛ղաքս, պէտք է որ մեծ հոգ ունենաք, որպէս զի՝ ատեն մը ձեզի մեղք գործել տրւող մէկ բանէ մը փափաքը երբոր կարսընցուներու կըլլաք, և կրնայիք որ ան բանը ձեր կամքովը մեկդի ձգելու պատրաստ էք, չըլլա՛յ թէ ան ժամանակը ներսիդինուդ խորհիք որ՝ դուք ա՛լ ճշմարտապէս Ողջում ըրիք ան ձեր գործած յանցանքին վրայ։ Բանզի սա կերպ դիպուածի մէջ շատ մարդիկ որ երբ ծերութեան մէջ կիյնան,

կամ իրենց վիճակէն ու կացութեան մէջ մէկ փոփոխութիւն մը որ կըլլայ, ինքիրեննուն կըխաբուին այսպէս կար_ծելով թէ իրենք ան իրենց առջի ա_տենվան գործած մեղքին յօժարու_թիւնը հիմայ կորսընցուներովնին՝ ալ տպաշխարեցին ան մեղքին վրայ, բայց ասանկ չէ՛ ։

Մեծցած մարդիկները շատ անգամ իրենց փափաքած բաները կըփոխ_փըխեն այնչափ՝ որչափ որ տղաքը կը_նեն, զանազան արտաքին պատճառ_ներու համար ։

Մէկ մարդ մը՝ որ հիւանդութենէն իր սենեակին մէջ գոցված ըլլայ, և գիտնայ որ ինքը չի կրնար տունէն դուրս ելլալ, դուցէ պիտի խորհի որ ինքը բոլորովին մէկղի ձգեց ան իր բաղձանքները Կիրակի օր գինետուն_ները երթալու, կամ սրճարանները նստելով նարտ խաղալու, և ուրիշ մարմնաւոր զըւարճութիւններ ընե_լու ։ Դուցէ նաև պիտի խորհի թէ,

ինքը ճշմարիտ աստուածութիւն կամ զերջ ունի անգամ մը աս բաները ընելուն համար ան Տէրունական Սուրբ օրերը ։

Բայց թող նայինք իր առողջութիւնը նորէն վրան դայ ․ անատեն պէտի տեսնըվի՝ թէ ան իր ըրած աստուածութիւնը ճշմարի՞տ է մի թէ չէ ։ Ակեց՚ի զատ ինտո՞ր կըհամարձակի ասանկ խորհիլ՝ թէ ինքը ճշմարիտ Օղջում ըրած է , երբոր ան առնընալ իր հիւանդ եղած ժամանակը նըստած սենեակին մէջը բանը գործը նայիլ խաղալ ըլլայ նէ Կիրակի օրը , որ ան սուրբ օրը եվէլօք արժան է Աստուծոյ օրէնքներուն վրայով խօսիլ , ու անոր Սուրբ Գիրքը կարդալ ։

Անանկին մէ՛ մոռնաք արդաքս , որ եթէ մէկ մեղքի մը վրայ ճշմարտապէս Օղջում ընելու ըլլաք նէ , նոյնպէս բոլոր մեղքերուն վրայ Օղջում պիտի ընէք ։ Ու որ՝ եթէ մէկ մեղք մը

մէկ դի ձգէք, ու բոլոր մեղքերը մէկ դի ձգելու համար՝ և Աստուծոյ ձեզմէ պահանջած բոլոր բաները ընելու համար ջանք մը ու խնդրուածք մը չընէք նէ, այլ ան մէկ մեղքը մէկ դի ձգելնիդ զղջում ունեցած ըլլալնիդ չի ցուցըներ ։

Ես իմ ստորագրած զղջումին կերպը մէկ սուտ տեսակ զղջում մըն է, որն որ թէ մեծերուն և թէ տղոց վրայ շատ կայ . կըյուսամ որ ես իմ ըսածս մտքերնիդ պահելու պիտի աշխատիք ։

Պօղոս . Մա՛յր, ատեն ատեն ես յանցանք ընելէս ետքը՝ ինքզինքիս վրայ շատ տհաճութիւն կունենամ ։ Կըխորհիմ ինքիրենս թէ ես ինչ յիմար ու չար տղայ մը եղած եմ ։ Եւ աս խորհուրդը իմ վրաս՝ թշուառութիւն զգալ կուտայ ճիշտ այնպէս՝ ինչպէս որ հրամանքնիդ իմ վրայովս տհաճութիւն ունեցած ատենը ես թշուառութիւն կըզգամ նէ ։

Մայր · Տղա՛ս՝ ատիկա խղճմտանքին ինչ ըլլալը կը ցուցընէ ։ Աս կերպ զգացումները կը բխին Անձնանախատինք ։ Խղճմտանքնիդ ձեզի տեսնալ ու զգալ կու տայ ձեր յանցանքը , և անոր համար դուք ինքզինքնիդ կը նախատէք նոյն կերպով՝ որպէս թէ մէկ ուրիշ մարդ մը ձեր յանցանքին տեղեկացած ըլլալով ան յանդիմանութիւնը կընէկոր ։

Պօղիկոր · Աս ճշմարի՞տ Օղջում է մի ։

Մայր · Աս ամէն անատեղ կըգտնըվի՞ ուր որ ճշմարիտ Օղջում կայ ։ Բայց աս կերպ զգացում կրնայ ըլլալ անտեղ՝ ուրատեղ որ ճշմարիտ Օղջումի պէս բան մըն ալ չի կայ ։

Ամէն մարդ՝ որ մեղքի մէջ թօրացած չէ , աս անձնանախատինքը խորունկ կերպով մը կըզգայ՝ երբոր իր խղճմտանքին արգիլած բանը ընելու ըլլայ նէ ։

Աս անձնանախատինքը արժան է՝

որ գիրենք Ճշմարիտ Օծման տանի ։ Որովհետև աս կը ցուցընէ թէ մեղքը ինչ մէկ սոսկալի ախտ մըն է, որ ինքիրմէն մեղաւորը տանի թշուառական կրնէկոր՝ ինքը ինքզինքին տանջողը ըլլալովը ։ Նա կը ցուցընէ թէ՝ անոնք որ առանց Օծումի կը մեռնին, և յուսահատութեան աշխարհը կերթան, իրենց քաշած չարչարանքներուն խիստ մեծ մասը իրենք ինքզինքներնուն վրայ պիտի բերեն ։ Նա կը ցուցընէ թէ ինչո՛ր սուրբը՝ արդար ու բարի է Աստուծոյ օրէնքը, որ մեղաւորները կը դատապարտէ ։ Վանզի աս օրէնքը անոր համար եղած է՝ որ աղէկին ու գէշին մէջը մէկ էական ու մեծ տարբերութիւն մը կայ ։ Նաև աս աղէկին ու գէշին մէջը եղած տարբերութիւնը մեղաւորին իրեն խղճմտանքը կիմանայ ու կը զգայ ։ Նա անձնանախատինքը կը ցուցընէ թէ ինչո՛ր արժան է մեղաւորին որ մեղքէ ազատ ըլլալ ցանկայ ։ ու ինքը կարենայ նո-

ըսէն Աստուծոյ շնորհքին ու բարեկամութեան մէջը դրուիլ ։ Քանզի թէ որ ինքը իր յանցանքին մէջը այնչափ գէշութիւն տեսնալու ըլլայ, որ ան ինքզինքը նախատէ՝ և իր բրածին վրայ ամըչկութիւն մը զգայ, և իր աչքին առջևը ինքզինքը անարգ սեպէ նէ, հապա Աստուած ինչ պիտի խորհի արդեօք իր վրան ։ Ինչպէս պիտի երևայ ինքը անանկ մէկ Լակի մը առջևը, որն որ կատարելապէս մաքուր ու սուրբ է, և որ՝ անիկա միայն անհնարին ատելութեամբ մը կընայի մեղքին վրայ ։

Գտնեք որ՝ ան անձնանախատինքը թէպէտ այնչափ լեղի ու վշտալի ալ ըլլայ մարդուս վրայ, սակայն կընայ ըլլալ որ անոր հետ ճշմարիտ Զղջում չըլլայ երբեմն մարդուս սրտին մէջը ։

Զոր օրինակ Իսկարիովտացի Յուդա՝ ան չար ու ապերախտ աշակերտը, որ Քրիստոս մատնեց, անանկ անձնանախատինք մը ունեցած պիտի

ըլլայ մէկ շատ բարձր սարիձանի մը
մէջ ։ Քանզի իր գործքը ցուցուց որ՝
սպանել անձնանախատինք մը ունե֊
ցաւ . որովհետեւ երբոր անիկա տե֊
սաւ իր Տէրոջը ու Վարդապետին ա֊
նարժան մատնութեան վախճանը , որ
ան Քրիստոսը մահուան դատապար֊
տեց , անատեն ինքիրենը զղջաց ։
Ինքը ներսիդին իմացաւ՝ որ իր ըրածը
շատ գէշ գործ էր . ինքը սա բանին
համար տրտում էր , և կուզէր չէ
մատնած ըլլար Քրիստոսը ։ Բայց ա֊
նիկա մէկ ճշմարիտ Զղջում մը չէր ։
Քանզի թէ որ ժամանակ ունենայի ,
դիւրութեամբ պիտի ցուցրնէի ձեզի
թէ՝ Սուրբ Գիրքին մէջ երկու տեսակ
Զղջումի վրայ խօսք կայ ։

Մէկը Յուդայի ունեցածին պէս
է , որ իր ներսիդին մէկ աղէկ դառնա֊
լու փոփոխութիւն մը չեղաւ ։ Անիկա
տրտմութիւն քաշեց ըրածին վրայ
միայն անոր համար՝ որ ինքը ան ըրա֊
ծէն ամօթ ու նախատինք զգաց իր

ներախիղին , և սակայն Աստուծոյ ար֊դար սրդողկութենէն անոր դէմ ։ Ու֊չէ՛ թէ որ ինքը ըրած մեղքը իրապէս ատեց՝ այն մեղքին բուն ինքիրմէ ու֊նեցած գէշութիւնը իմանալով ։ Ու չէ թէ որ ինքը Աստուած սիրեց , ու որ անոր պատուէրներուն հնազանդիլ ուզեց ։

Մ՝իւս տեսակ զղջումը՝ որուն հա֊մար Աստուածաշունչին մէջը խօսուած է , անիկա է՝ որն որ ետքը ձեզի պիտի բացատրեմ · բայց հիմայ առջի տե֊սակին վրայ քիչ մըն ալ պիտի խօսիմ Յուդային օրինակովը ։

Յուդան նորէն այն երսուն կտոր արծաթը բերաւ քահանայապետնե֊րուն ու ժողովուրդին գլխաւորներուն , ու ըսաւ ։ Մ՝եղայ՝ որ ես անմեղ արու֊նը մատնեցի ։ Անոնք ալ ըսին , Մ՝եր հոգը չէ , ատիկա դուն գիտես ։ Ու ինքը այն արծաթը ձգեց տաճարին մէ֊ջը , ու ելաւ գնաց ինքզինքը կա֊խեց ։

Ո՜հ աս ինչ մէկ զարմանալի օրի֊

նակ մըն է ինքըզինքը նախատելու՝ մեղքին պատճառաւը ։

Բայց ինչ օգուտ, տակաւին ճշմարիտ զղջումը չէր կար ան անձնանախատինքին հետ կապված ։ Եթէ ըլլար նէ՝ Յուդա ան իր ըրածէն մէկ շատ տարբեր գործ մը պիտի ընէր ։ Իրեն պէտքը չէր որ Աստուծոյ դրած պատուէրներուն մէկը յիմարաբար քակելու վարդը երթար՝ ինքզինքը մեռցնելովը ։ Հապա պէտք էր ապրիլ ուղիղ, որ կարենար իր անձին խոնարհութիւնը ցուցընել Աստուծոյ ու իր ընկերներուն առջեւը զղջումըներովը. և որ՝ եթէ կարելի էր, մէկ կերպով մը կրնար ան Քրիստոսի դէմ ու անոր թագաւորութեանը դէմ ըրած վնասին տեղը Քրիստոնէական կեանքով և ան փրկիչին աւետարանը քարոզելով՝ անոր անունը փառաւորել ։

Հիմայ տղաքս՝ մեծ վտանգ կայ, որ դուք սխալ կըկարծէք թէ ան

անձնանախատրութիւնքը՝ որուն վրայ որ մենք խօսեցանք, Ճշմարիտ Զղջում է։

Այն անձնանախատրութիւնքը մէկ վշտագին զգացում մըն է, որ դուք անով թշուառութիւն կըզգաք։ Եւ գուցէ դուք պիտի խորհիք թէ՝ ասանկ թըշուառութիւններ քաշելով առաքինի տղաք կըլլաք։ Գուցէ նաև ատ ալ միտքերնուդ կանցունէք, որ ասիկա մեղքի համար պատիժ քաշելու մէկ տեսակ մըն է, որուն համբերելով մեղքը կաւըրըվի ու կըթողվի։

Բայց մի՛ մոռնաք, որ ատ անձնանախատրութիւնքը մինակ ինքիրենը Ճշմարիտ Զղջում չի կրնար ըլլալ։ Ուրիշ խորհուրդներ ու զգայութիւններ ալ հարկաւոր են։ Ան բանին մէջ չըլլայ որ խաբվիք դուք՝ աղէկ նայեցէք ան Յուդային օրինակին, որ ինքը իր միտքին մէջը զօրաւոր կերպով սաստիկ անձնանախատրութիւնք մը ունենալըվը՝ Ճշմարիտ Զղջում մը չունէր։

# ԳԼՈՒԽ. Ժ.

Մասնոց ճշմարիտ Օգնման Աստուծոյ համար հատուցում մը կընայ ըլլալ, ու ներում խնդրել է: Ամենօր յիշատակութեան մը առջի խոստմամ ներէին:

Մայր. Մխիթարութեան պիտի անցունէք տղաքս, որ սա նիւթը՝ որուն վրայ որ մենք կապվեցանք, երկան քարոզ բան մը եղաւ: Բայց ես կըյուսամ որ ատիկա ձեզի չի պիտի ձանձրացունէ:

Գուցէ ալ մէյմալ չի պիտի կըրնամ միջոց ունենալ անիկա ձեզի կատարեալ բացատրելու. քանզի կեանքիս վրայով ստոյգ մը չեմ գիտեր՝ որչափ պիտի ապրիմ: Եւ հիմայ ես ինքիրմէս կըզգամ թէ՝ իմ ձեր վրայ ունեցած պարտաւորութիւններէս ամէնէն հարկաւորը սա է, որ ես ձեզի ցուցընեմ թէ ինչպէս կընաք դուք Յի

սուս փրկիչին հետ յաւիտենական բարեկամութիւն մը ունենալ ։

Ուստի միայն մէկ ճամբայ մը կայ , որով դուք կրնաք աս բարեկամութիւնը ստանալ ։ Պէտք է որ անոր երթաք՝ զղջացող ու հաւատացեալ մեղաւորներու պէս ։

Ուրեմն որչափ հարկաւոր բան է , որ դուք հասկընաք թէ ինչ է ճշմարիտ Զղջումը · որ անիկա ձեզի կատարելապէս պարզաբանելու պիտի ջանամ ։

Եղիսա , Աբմոզը ինծի զրուցեց որ՝ դուն քուկին գեղեցիկ գիրքերէդ մէկը իրեն տուեր ես՝ երեկվան օրը խիստ բարկացած ատենդ անոր պզտի կառքը կոտրելուդ մէկ հատուցում մը ընելու համար ։

Եղիսա · Այդքէն շատ տխրեցայ ես՝ որ իրեն բարկացայ ու կոտրեցի անոր կառքը ։ Ես իմ սրտիս յօժարութիւնովը տուի ան գիրքը իրեն · և իրմէն խնդրեցի որ՝ ինծի ներում շնորհէ ։

Ան ալ զրուցե՞ց մի՝ մայր ։

Սոփ. Այո՛՝ զրուցեց. բայց միտ-քըդ բեր՝ աղջիկս, որ ուրիշ բան է մեղքի համար վճարք մը ընել՝ ու ա-նոր համար ներսում խնդրել. և բոլո-րովին ուրիշ բան է՝ որ դուն քու ը-րած յանցանքիդ վրայ ճշմարտապէս տրտմութիւն քաշես, և անկէ քաշած տրտմութենդ ալ ճշմարիտ պատ-ճառներէ յառաջ եկած ըլլայ։

Եւգէն. Բայց մայր՝ թէ որ ես ա-ղէկ բան մը ընեմ նէ, խնչո՞ւ համար այնչափ խնքըզինքս պիտի հոգնեցու-նեմ՝ որ գտնամ թէ ո՛ր բաներն են իմ ըրած գործիս շարժառիթները։

Սոփ. Ո՛նոր համար որ՝ աղէկ բան մը ըրած դուն չես կրնար ըլլալ, թէ որ քու ըրած բանիդ պատճառները գէշ կերպով են նէ։

Թէ որ դուն անն յանցանքիդ համար՝ որ բարկութիւնովդ քու եղբօրդ կա-քը կոտրեցիր, տրտմութիւն քաշելու ըլլաս միայն խնծմէ վախնալուդ հա-մար որ ես քեզի պատիժ կուտամ,

ան քու պատճառաւդ ա՛լ բոլորովին անձնատիրութիւնը եղած կըլլայ ։ Ո՞ր կերպ տրտմութիւնը չի ցուցըներ՝ որ քու ներսիդիդ մէկ աղէկի դառնալ փոխվիլը մը պիտի ըլլայ, կամ չի ցուցըներ որ դուն մէյմալ նոյնպէս չի պիտի բարկանաս՝ և յանցանք գործես, թէ որ դուն մեղքէդ անցուցնես՝, որ պիտի կրնաս անանկ բան մը ընել, ու ազատ ըլլալ ան յանցանքին վրայովը տեղեկութիւն ունենալէս ։

Նմանապէս՝ թէ որ դուն ան գիրքը տաս, ու անկէց ներսում խնդրես միայն անոր համար՝ որ գտնաս թէ դուն անոր կուզքը կորսելուդ համար հատուցում մը ըրած եղար, անպատեն քու տըրտմութեան պատճառաւդ անձնատիրութիւնը եղած կըլլայ բոլորովին ։ Դուն խորհէ որ՝ սա ճամբով պիտի կրնաս խալըսիլ խղճմտանքիդ յանդիմանութենէն, և որ՝ քու ըրած յանցանքդ բոլորովին պիտի մոռցըվի, և ալ քեզ չի պիտի տանջէ, որովհետև դուն

անոր անանկ ընծայ մը տուեր ։ և ի-րաւցընէ քու ըրած վնասէդ ետքը մեծ բարերարութիւն մը ըրեր իրեն ։

Բոլոր սա բաներէն ետքը , դուն խորհէ՛ս՝ թէ՝ քուկին անանկ մէկ վը-ճարք մը ընելը և իրմէն ներում խնդ-րելը իրեն գովել պիտի տայ քեզ , որ-քեզի աղէկ աղջիկ կանչեմ , ու բոլո-րովին ես մոռնամ ան ամէն եղած յան-ցանքները ։

Եւ ասանկով դուն՝ ինտոր որ քու-կին խղճմտանքիդ դատապարտութենէն խալըսեցար նէ , պիտի խալըսիս իմ յանդիմանութենէս՝ ու քեզի ետքը ժամանակը աղէկ բաներ ընելու հա-մար տալու խրատեմ ։

Հիմայ աղջիկս՝ թէ որ անոնք են պատճառները , որ քեզի տալ տուին ան գիրքը քու եղբօրդ՝ ու իրմէն նե-րում խնդրել նէ , գիտցած եղիր որ՝ քու միտքիդ ու սրտիդ մէջը ճշմարիտ Ողջման խորհուրդներ չի կայ ամե-նեւին ։

Ահա զանկըներս , ուրիշ գրուածներու մէջ սա տեսակ անձնասիրութեան պատճառները գուցէ ձեզի ճամբայ պիտի բանան , որ ձեր ըրած յանցանքին համար վճարք մը ընէք ։ և Աստուծմէ ալ ներում խնդրել պիտի համարձակիք՝ մեղքերնուդ վրայ ամենևին ճշմարիտ զղջում չունենալով ։

Գուցէ կըխորհիք որ սաանկ վճարք ընելովնիդ , կամ թէ ուրիշներուն մարդասիրութեան ճամբով մէկ աղէկ բան մը ընելովնիդ , կամ ձեր արտաքին արարողութիւնովը Աստուծոյ քանի մը պատուէրներուն հնազանդ ըլլալովնիդ , կըլլայ որ՝ Աստուծոյ ձեր վրայ ունեցած սրդողկութիւնը պիտի քիչնայ , և նոյնպէս ձեզի տալուն պատիժը պիտի քիչնայ ։

Գուցէ կըխորհիք ալ , որ սա ճամբով Աստուծոյ ցուցըցած անպատուութիւններնուդ և ըրած անհնազանդութիւններնուդ համար կրնաք

վճարք մը ընել , և իրեն համար քիչ մը բան ընծայելով՝ որն որ ձեր աչքին շատ կերևայ , կամ ձեր սիրած մէկ սովորութիւնը մէկդի ձգելով , կամ անանկ բան մը ընելով , որ ձեր առջին դժուարութեամբ ըլլըլվելու բան կերևայ՝ ու մեծ աշխատանքի մէջ ձեզ ձգել կուտայ նէ , կրնաք ընել իրեն ձեր ըրած անիրաւութենէն ելլել մէկ աղէկութիւն մը ։

Գուցէ կըխորհիք , որ աս կերպով ձեր խղճմտանքին մէջ դիւրութիւն մը կրնաք զգալ , և անկէ ետև ինքըզինքնիդ ներողութեան մէջ չէք խօթեր ձեր մեղանչական գործքերուն համար ։

Բայց Աստուծոյ ուզած Զղջումը ատիկա չէ ։

Խել մը մարդիկներ աս կերպը Զղջում է ըսին ։ Նաև անոնք մինչև անգամ այնչափ խորհեցան , որ ամէնէն խիստ դժուարին ու ձանձրալի եղած բաները ընելովնին , կամ իրենց անձերնուն վրայ ներողութիւն ու վիշտ

կրելովնին , կարենան մէկ հաստա-ցում մը ընել Աստուծոյ՝ անոր օրէն-քին անհնազանդ զանըվելնուն հա-մար ։ Անոնք մինչև անգամ խորհե-ցան՝ որ աս ձամբով կրնան Աստու-ծոյ շնորհքը ստանալ ; ան ալ՝ իրենց արժանաւոր ըլլալովը ։

Հիմայ զաւակընկերս , կարելի է որ դուք մինչև հիմայ աս կերպ խոր-հուրդներ ունեցած չէք ․ բայց քանի որ մեծնալու վրայ էք , էվելի հաւա-նական է՝ որ սանկ խորհուրդներ ու զգացումներ՝ որոնք որ ես ահա ստո-րագրեցի ; պիտի ունենաք ներսիդի-նիդ ։

Աս կերպ խորհուրդները ծուռ միտքով ճշմարիտ Ողջումի տեղ առ-նելնուդ համար մեծ վտանգի մէջ պի-տի ըլլաք ։

Իրաւցընէ դուք հիմայ իմ կառա-վարութեան վրայով և ձեր տանը մէ-ջի իրարու հետ կենցաղավարութեանը վրայով քանի մը սանկ խորհուրդ-

ներ ու զգայութիւններ ունեցաք դուք ։ Երկնախնամ որ մն կերպ խորհուրդ մը Աղխան իր ներքինին ունեցաւ · քանզի յայտնի կերեւայ ան պատճառներէն , որոնցմով որ ինքը յորդորվեցաւ իր եղբօրը դէմ ըրած յանցանքին համար վճարք մը ընելու՝ և անկէց թողութիւն խնդրելու ։

Հիմայ տըրդաքս պէտք է որ դուք ան պատճառներուն նայիք , որոնք որ ձեզ կըյորդորեն մէկ հատուցում մը ընելու , և թողութիւն խնդրելու թէ ձեր ընկերներէն և թէ Աստուծմէ ։

Թէ որ ան պատճառները աղէկ են նէ , անոնց սկիզբը Սէրը պիտի ըլլայ ։ Դու անսատէն դուք Սէր պիտի ունենաք և՛ Աստուծոյ վրայ , և՛ ուրիշներուն վրայ ։ Պիտի ուզէք Աստուծոյ հնազանդիլ՝ անոր այնչափ իմաստուն ու արդար՝ սուրբ և բարի ըլլալուն համար ։ Պիտի ուզէք ուրիշներուն աղէկութիւն ընել · որ սով կարենաք նմանիլ Աստուծոյ , որ ինքը կըցանկայ

էր ստեղծուածները երջանիկ ընել ։ Ահա որ դուք Աստուծոյ դէմ մեղք գործած էք՝ իրեն օրէնքներուն մէկը կոտրելով ․ կամ ուրիշներուն անիրաւութիւն մը ընելով նէ ․ ան Տէրը՝ որուն վրայ որ ես հիմայ խօսեցայ ․ ձեզի ճամբայ պիտի բանայ ան ըրածնուդ վրայ զղջալու ․ և ան զղջումը յայտնի ցուցընելու աս կերպերով ․ այսինքըն՝ Աստուծմէ և ձեր ընկերներէն ալ թողութիւն խնդրելով ․ և ձեր կարողութեանը չափ հատուցում մը ընելով ։ Նաև աս բանս կըցուցընէ թէ՝ ինտոր հարկաւոր է որ ձեր սիրտը Հոգւով Սրբով նորոգվի ։

Թէ որ աս կերպ Աստուծոյ ու մարդոց վրայ սիրոյ զգացում մը չունենաք նէ ․ ան ամէն բաները՝ որ դուք մեղքի համար մէկ վճարք մը ընելու ճամբավը կընէքնէ ․ անոնք ճշմարիտ զղջումին մասունքը չեն ։

Ինչ և իցէ ձեր Բարեգործութիւն ըրած բաները թէ որ յառաջ չի գան

ան կերպ սիրոյ նէ՝ անոնք ճշմարիտ Օղջունմի նշաններ չեն ։

Լսեցէք ինչ կըսէ Պաւղոս առա_քեալ սա նիւթին վրայով իր Կորըն_թացիներուն խրկած առջի թուղթին ժգ գլխուն մէջը . “ Թէ որ իմ բոլոր ունեցածս աղքատներուն կերցունեմ, ու թէ որ իմ մարմինս կրակի տամ, ու Սէր որ չունենամ (կամ Աստուծոյ վրայ կամ մարդոց վրայ) նէ, ան ին_ծի օգուտ մը չըներ”։

Ուստի պէտք է որ ձեր սիրտը Հո_գւով Սրբով նորոգվի՝ որ դուք ան սէրը ունենաք ։

Գրիգոր . Սա՛յր՝ ե՞րբ պիտի զրուցես մեզի թէ ո՞րն է ճշմարիտ Օղջունը ։

Սայր . Հիմայ պատրաստ եմ ատի_կա ընելու . և կըյուսամ որ ատիկա շատ աղէկ կերպով քիչ մը ետքը պի_տի բացատրեմ ձեզի, որ մինչև այս_չափ ժամանակ ես ձեզի ցուցըցի թէ՝ ո՛ր կերպը ճշմարիտ Օղջուն չէ, և ո՛ր բաներն են անոնք՝ որոնք մեզի

վրայ տուանց ճշմարիտ Օղջում ընծելու կրնայ մարդս խորհիլ ու զգալ իր ներքինին :

Աս իբրեւ մեր խոստովանութիւնը վերջ ընծելէն առաջ, նորէն կարճը֊կեկ մը անցած քանի մը երեւոյթները ձեզի ըրած բացատրութիւններուս վրայէն պէտք է որ անցնիմ․ որ անօգուտ պիտի ընէ ձեր միտքը արթընցունելու, ու ձեզ պատրաստ ընելու, որ այլ եղերլօք աղէկ կրնաք հասկընալ ինչ որ տակաւին ես ձեզի պիտի սորվեցունեմ նէ :

ա․ Թէ որ անե տրտմութիւնը՝ որ դուք ձեր ներքինին կունենաք Աստուծոյ պատճառած բանը ընելնուդ համար, կամ անոր պատուիրած բանը չընելնուդ համար, միայն անոր պատճառաւ եղած ըլլայ՝ որ դուք վախնաք Աստուծոյ իր օրէնքները կոտրողներուն դէմ խոստացած պատիժէն նէ ․ գիտցած եղիք որ՝ անկատար դուք մեղքերնուդ վրայ ճշմարիտ Օղջում չունիք ներքինինիդ :

Բ . Թէ որ Աստուած սպառնացածէ
չըլլար մէկ պատիժ մը մեղքի դէմ ,
կամ Թէ որ կարելի ըլլար ձեզի հաս_
տալ Թէ՝ ինքը ձեր մեղքը չի պիտի
իմանայ ; և անոր համար դուք մեղքը
սիրելու ետևէ ըլլայիք նէ , անկից
կերևայ որ դուք մեղքերնուդ վրայ
Ճշմարտապէս Զղջում չէք ըրած :
Գ . Երնայք որ դուք մեղքերնիդ Աս_
տուծոյ խոստովանիք և ան ընելովնիդ
դուցէ կիմանաք ձեր յանցաւոր ըլլա_
լը իր առջևը , և տակաւին անանկո՞վ
սրտերնուդ մէջը Ճշմարիտ Զղջում
չէք ունենար : Քանզի դուցէ աս բանը
բոլորովին պատժին վախուն համար
կընէք : Կամ դուցէ դուք յոյս ալ կու_
նենաք՝ որ ատ ձեր խոստովանանքը
պատճառ պիտի ըլլայ , որ Աստուծոյ
ձեր վրայ ունեցած սրդողութիւնը
պիտի քիչնայ , և որ անանկով իրեն
ձեզի տալու պատիժը պիտի քիչնայ ,
կամ դուցէ ամենևին չի պատժեր :
Հիմայ Թէ որ մեղքերնիդ Աստուծոյ

խոստովանելու պատճառները միայն ասոնք են նէ, անոնցմէ չերեւար որ դուք ան մեղքերնուդ վրայ ճշմարտապէս Զղջում ըրած ըլլաք:

Գ. Ճշմարիտ Զղջումը շատ աւելի պիտի ըլլայ մէկ սոսկ զօրաւոր առաջադրութենէ մը կամ դիտաւորութենէ՝ որ կընէք մեղքէ հեռու կենալու համար, ու զԱստուած սիրել սկըսելու՝ և անոր հնազանդելու համար: Աս կերպ առաջադրութիւնը օգուտ մը չի պիտի ունենայ՝ թէ որ ան յառաջ չի գայ մէկ տրտմագնեաց սրտէ մը մեղքերնուդ համար, որոնք մէկ իմաստուն՝ սուրբ՝ արդար ու բարի Աստուծոյ դէմը գործեցէք: Ան առաջադրութիւնը օգտակար չի պիտի ըլլայ՝ թէ որ դուք չզղջաք նաև մէկ անխարդախ յոյս մը Յիսուս Քրիստոսի ձեր մի միայն փրկիչին վրայ: Ան առաջադրութիւնը օգուտ մը չի պիտի ունենայ՝ թէ որ ձեր խելքին զօրութիւնովը միայն եղած ըլլայ նէ. Հապա

պէտք է որ աս ընելու ատեննիդ Աս–տուծմէ խնդրեք Քրիստոսի համար, որ իր Սուրբ Հոգին ձեզի տայ · որով կրնաք զօրանալ ան առաջադրութիւ–նը պահելու, և որով ձեր սրտին տրամադրութիւնը նորոգվի ։

ն . Գուցէ կրնայ որ ետ կենաք մէկ մասնաւոր դէշ սովորութիւն մը գոր–ծելէն Աստուծոյ դէմ, և անանկով խորհիք որ ճշմարտապէս զղջում ը–րիք ան մեղքին վրայ ։ Բայց աս չէ կրնար ըլլալ, թէ որ դուք ուրիշ կերպ բանելով մեղքի մէջ յառաջանալու ըլլաք նէ ։ Աս պիտի ըլլայ միայն ձեր մէկ մեղքէ մը ձանձրանալնիդ՝ ու ա–նիկա ուրիշներուն հետ փոխելնիդ ։ Մեղքի վրայ զղջում ընելը՝ թէ որ ճշմարիտ է նէ, բոլոր մեղքերուն վը–րայով զղջում ընելուն հետ պիտի ընկերանայ ։ Մէկ մեղք մը մէկ դի ձգելը՝ անոր վրայ ճշմարտապէս զըղ–ջալուն նշանը չէ . հապա ան է միայն նշանը, որ մէկ հաստատ ջանք մը և

աղօթք մը կըլլայ բոլոր մեղքերը մէկ դին ձգելու համար՝ և ամէն Աստուծոյ ձեզմէ ուզած բաները կատարելու համար ։

Է․ Դուք կարելի է որ դժար նաև մեծ ու ցաւագին անձնանախատինք մը մեղքի համար՝ Յուդայի՛ն ըրածին պէս , և տակաւին անանկով ճշմարտապէս ան մեղքին վրայ զղջում չէք ըներ ։ Աստուծմէ ու ձեր ընկերներէն կարելի է որ ներում խնդրէք , և ուրիշներուն ըրած անիրաւութիւններունուդ համար վճարք մը ընել նայիք , և կարելի է որ աս ճամբով ու ան ձեր ըրած բարեգործութիւններովը յուսաք որ՝ ձեր խղճմտանքը կըխաղաղացունէք , և Աստուծոյ շնորհքը կըստանաք , և տակաւին ամէն աս բաները ընելովնիդ մեղքերնուդ վրայ ճշմարիտ զղջում չէք ըներ ։

որոնք իրենց մեղքերնուն վրայ ճշմար-տապէս զղջում ընողները պէտք ունենան : Ասոնք ան ամէն զգացումները չէ պէտք ունենան իրենց զղջմանը սկիզբը , Հապա ետքը թէ որ իրենք ապրին նէ՝ ան կերպ զգացումներ ներսիդինին պէտք ունենան կամուխ եղեր՝ թէ ուշ , և օրէ օր ալ էվելը զօրաւոր կերպով : Պուցէ ոմանք ան զգացումներուն ու խորհուրդներուն մէկ քանիին իրենց մանկութեան կամ պատանեկութեան հասակին մէջ պէտք ունենան . և ոմանք իրենց երիտասարդութեան կամ ծերութեան հասակին մէջը պէտք ունենան : Ասկէց 'ի զատ՝ ոմանք մէկ կարգով , և ոմանք մէկ ուրիշ տարբեր կարգով մը պէտք ունենան ան զգացումները ու խորհուրդները : Ոմանք մարդիկ գուցէ պէտք ունենան աս խորհուրդներուն ու զգացումներուն մէկ քանիին ուրիշներուն ունեցածէն էվելօք շատ պայծառ ու զօրաւոր կերպով :

ունի իրմէն կատարեալ սէր ու հնա-
զանդութիւն պահանջելու ։ Կիմանայ
ինքնիրմէն՝ որ յանցանք գործած է ին-
քը Աստուծոյ վրայ սէր ու հնազան-
դութիւն չունենալուն համար ։ Կի-
մանայ որ աս բանը ընելովը ինքը չի
կրնար զինքը արդարացընել ։ Կիմա-
նայ որ՝ բուն իր մեղանչականութիւնը
և իր կամապաշտութիւնը իրեն ճամ-
բայ բացեր են ան սէրը ու հնազան-
դութիւնը Աստուծոյ վրայ ցուցընե-
լէն ետ կենալու ։ Կըխոստովանի ին-
քը իր հպարտ ու կամակոր սրտին մեծ
յանցանքը ։ Ինքը անոր համար ճըշ-
մարտապէս ու խորունկ կերպով տրտ-
մութիւն կընէ ։ Եւ այնպէս ինքը իր
կամքը կը խոնարհեցընէ Աստուծոյ
կամքին հնազանդելու ․ և աս չէ թէ
հնազանդութիւնը մէկ բռնութիւնով
մը կընէ՝ ինչպէս երբոր մէկ տղայ մը
իր ծնողացը կամքը պատիժին վախէն
կատարել կրնայ նէ ․ հապա ինքը
ազատաբար կատարելապէս և ուրա-

խութեամբ կը բաղձայ ու կը ջանայ աս ընելու, և իր յոյսը Քրիստոսի վրայ կը դնէ՝ անկէց օգնութիւն խնդրելու, որ կարող ըլլայ աս ընելու: Իր կամքը կը խոնարհի Աստուծոյ կամքին հնազանդելու ամէն բանի մէջ: Ինքը կուզէ՝ որ Աստուած ինչ որ կուզէնէ՝ ընէ իրեն դէպ 'ի Երկինք երթալու ու սրբութեան վիճակին մէջ մըտնալու առաջնորդելու համար: Ինքը կը խորհի Աստուծոյ վրայ՝ թէ ան ո՛րչափ բարերարութիւն ըրեր է իրեն: Իր առջի անցուցած կեանքին վրայ կը նայի, ու կը տեսնայ թէ ո՛րչափ մխիթարութիւններ ու շնորհքներ՝ և մասնաւոր ողորմութիւններ ընդուներ է ան իր Երկնաւոր Հօրմէն:

Ո՛րչափ ուրիշները աս իրեն եղած բարութիւններէն քիչիկ մը՝ կամ հազիւ թէ մէկ մասը առեր էին: Բայց ինքը անոնց առածէն տարբեր կերպով ընդունելու ան շնորհքները արժանի չէր եղած: Իրաւցընէ ինքը կը-

զարմանայ՝ որ անանկմէ եղկելի դէշ բաներ ընդունած չէ ․ ինչու որ՝ ան մարդիկներէն շատերը իրենց պարտաւորութիւնը չէին ճանչցեր՝ ինչպէս որ ինքը իր պարտաւորութիւնը ճանչցեր էր ու չէր կատարեր ։

Կըտեսնայ որ՝ Աստուած իր վրայ մեծ համբերութիւն ու երկայնմտութիւն ցուցըցեր էր , զինքը իր բոլոր բարութիւններէն չի զըկելովը՝ որոնք որ ինքը անշահաւոր կերպով գործածեր էր , և անիկա իր մեղքերուն մէջը չի կորսընցունելովը ։

Ու աս ամէն բաներէն եղեր ինչ մեծ ու զարմանալի սէր ցուցըցեր էր Աստուած իր վրայ՝ և իր մեղաւոր ընկերներուն վրայ , իր միակհատիկ սիրելի Որդին խըրկելովը՝ խաչին վրայ մեռնելու համար , որպէս զի՝ ամէն անոր յուսացողները թողութիւն գըտնան ու փրկըվին ։

Ինքը աս փրկիչին վրայ լսեր էր , աս բարերար ու բարեգութ փրկիչին

վրայ. սա մեղաւորներուն Բարեկամին ու Յիսուսին վրայ, սա մահէն ու դժոխքէն խալըսող ամենաբաւական ու ամենակարող Փրկիչին վրայ։ Ինքը անկեց հրաւիրուած էր՝ ու նորէն նորէն խրատուած էր, որ իրեն գայ, իրեն հաւտայ, և իրմով անոր փրկութիւն ըլլայ, և երջանիկ ըլլայ հիմայ՝ ու մինչև յաւիտեան։

Ու ահա Աստուծոյ բոլոր սա բարութիւններուն դէմ ինքը մեղք գործեր էր։ Քրիստոսի բոլոր սա ողորմութիւններուն դէմ ինքը մեղանչեր էր։ Իր այսչափ յանցանքները անանկ մը կը տեսնայ որ ինքը առաջ ամենևին ան կերպով չէր տեսած։ Կիմանայ իր վրայով թէ՝ ինքը մէկ էվելի անզգամ ու ապերախտ մեղաւոր մը եղած է։ Ու իր անշնորհքութեանը վրայ միշտ կողբայ. իր յանցանքը կը խոստովանի Աստուծոյ։ Մէկ պզտի տղեկ մը պէս կուլայ խոնարհ ու կոտրած սրտով նորէն դառնալ իր բարերար

Հօրը քովը՝ որն որ Ինքը բարեկամու-
ցեր էր ։ Նաև ան իր Երկնաւոր Հօրը
ցուցըրած Ճամբովը կըրցաւ կու-
գայ ։ Ինքը գիտէ՝ որ Աստուած զինքը
ուրիշ կերպով չի պիտի ընդունի ,
հապա միայն թէ Տէր Յիսուս Քրիս-
տոսին հաւատալովը , և բոլորովին
յուսալով անոր բաներուն վրայ՝ որոնք
Քրիստոս ըրաւ նեղութիւն քաշելով
մեզ Աստուծոյ հետ հաշտեցունելու
համար ։

Նայելով ինքը աս փրկիչին վրայ
իր յոյսը կըդնէ , և իրեն մեղքով լե-
ցուն ըլլալովը կըհաւատայ Աստուծոյ
խոստմունքներուն որոնք Քրիստոսի
ձեռքով եղած են ։ Նաև ինքըզինքը ա-
նոր ողորմութեանը ձգելով՝ իր տրտ-
մութիւնը ալ էվելօք խորունկ կըլ-
լայ , խորհելով որ իր մեղքերն էին՝
որոնց համար աս փրկիչին հարկ ե-
ղաւ չարչարանք քաշել՝ ու մեռնիլ ։

Նաև իրաւցընէ իր յանցանքը մեծ
կերևայ իրեն ․ և շատ անարգ կերևայ

էր բոլոր աստուածպաշտութիւնը , եւ բոլոր ինքը կըմտածէ թէ որչափ ժամանակ աս փիլիսոփաները ինքը շարունակ մերժեր էր մէջը , եւ Աստուծոյ աս ողորմու-թիւնը արհամարհեր էր ։ Ճշմարիտ աս ինքը սա տեղ ալ պատճառներ կը-գտնայ . Օգնում ընելու , արդիւնք թա-փելու , հաստատութիւններ ընելու ։

Եւ այն ճշմարիտ աստուածպաշտութիւնը դէպ 'ի Աստուծոյ կենացի , եւ անոր օ-րէնքին վըրայ կըխորհի անանկ կեր-պով մը՝ որ ինքը առաջ անանկ չէր խորհեր ։ Կըտեսնայ որ այն օրէնքնե-րը նոյն Աստուծոյ պէս սուրբ՝ արդար ու բարի են . եւ որ՝ շատ վայելուչ ու ար-ժան է , որ Աստուած աստանկ օրէնք-ներ տուեր է . որոնք պէտք է որ բո-լոր իր ստեղծած արարածները պա-հուին՝ ու հնազանդին անոնց ։ Կը-տեսնայ որ Աստուած շատ բարի է ե-ղեր աս օրէնքները դնելովը . եւ որ՝ եթէ ամէնքը անոնց հնազանդին նէ՝ աշխարհ ըլլան մէկ մէկու հետ սիրով

կապուած մէկ մեծ ընտանիքի մը՝ ամէնը զինուած սիրելով ու անոր ծառայելով, և ուրիշներն ալ սիրելով՝ ու անոնց աղէկութեանը ու երջանկութեանը վրայ ուրախանալով։ Արդարայ հիմայ իր վրայովը՝ թէ ինքը աս օրէնքներուն՝ հնազանդ չըլլալովը շատ կամապաշտ ու գէշ մէկ մըն է եղեր։ Ուրաջ ինքը այնպէս կարծեր էր թէ՝ ան օրէնքները խիստ ու ծանր բաներ են, ու միշտ իր մխիթարութեանը և բերկրութեանը հակառակ են։ Բայց հիմայ կիմանայ ինքը՝ որ ան օրէնքները ճիշդ անանկ բաներ են՝ որ իր անձին երջանկութիւնը ուրիշներուն երջանկութեանը հետ մէկ տեղ հաստատելու համար, և իր երջանկութեանը ու խաղաղութեանը ճամբուն մէջը իրեն առաջնորդելու համար յարմար են։ Կիմանայ որ ինքը իրաւաբար դատապարտութեան տակ ինկած է աս օրէնքները կոտրելուն համար. և կիմանայ ալ՝ որ ան

զօրու Թշուառութենէն խալըսելու յոյսը միայն Քրիստոսի վրայ ապաւինելովը պիտի ըլլայ ։

Ու Նաւածոյ դէմ իր առջի ըրած անհնազանդութեանը վրայ կուլայ . և անկէ ետև իր հոգէին վրայ ջերմեռանդութիւն մը կուգայ , որով կը փափաքի Թէ՝ ալ ետքի ժամանակը իմանայ ինքը ան ամէն Նաւածոյ իրմէն պահանջած բաները , և կատարէ անոնք մէկ յօժարակամ ու հնազանդ սրտով մը ։

Ու վաղը երեկուան տղաքը՝ եկելոք երկար քննութիւնով պիտի տեսնանք Ճշմարիտ Ողջումին ինչ ըլլալը ։



ունի իրմէն կատարեալ սէր ու հնա-
զանդութիւն պահանջելու ։ Երմանեայ
ինքիրմէն՝ որ յանցանք գործած է ին-
քը Աստուծոյ վրայ սէր ու հնազան-
դութիւն չունենալուն համար ։ Եր-
մանեայ որ ան բանը ընելովը ինքը չի
կրնար զինքը արդարացընել ։ Երմա-
նեայ որ՝ բուն իր մեղանչականութիւնը
և իր կամապաշտութիւնը իրեն ճամ-
բայ բացեր են ան սէրը ու հնազան-
դութիւնը Աստուծոյ վրայ ցուցընե-
լէն ետև կենալու ։ Կըխոստովանի ին-
քը իր հպարտ ու կամակոր սրտին մեծ
յանցանքը ։ Ինքը անոր համար ճըշ-
մարտապէս ու խորունկ կերպով սրտա-
մտութիւն կընէ ։ Եւ այնպէս ինքը իր
կամքը կըխոնարհեցընէ Աստուծոյ
կամքին հնազանդելու ․ և ան չէ թէ
հնազանդութիւնը մէկ բռնութիւնով
մը կընէ՝ ինչպէս երբոր մէկ տղայ մը
իր ծնողացը կամքը պատիժին վախէն
կատարել կըհնայի նէ ․ հապա ինքը
ազատաբար կատարելապէս և ուրա-

խուլթեամբ կըքաղձայ ու կը ջանայ աս ընելու, և իր յոյսը Քրիստոսի վրայ կըդնէ՝ անկէց օգնութիւն խնդրելու, որ կարող ըլլայ աս ընելու։ Իր կամքը կըխոնարհի Աստուծոյ կամքին հնազանդելու ամէն բանի մէջ։ Ինքը կուզէ՝ որ Աստուած ինոր որ կուզէ նէ՝ ընէ իրեն դէպ 'ի Երկինքը երթալու ու սրբութեան վիճակին մէջ մըտնալու առաջնորդելու ատենը։ Ինքը կըխորհի Աստուծոյ վրայ՝ թէ ան ո՛րչափ բարերարութիւն ըրեր է իրեն։ Իր առջի անցուցած կեանքին վրայ կընայի, ու կըտեսնայ թէ ո՛րչափ մխիթարութիւններ ու շնորհքներ՝ և մասնաւոր ողորմութիւններ ընդուներ է ան իր Երկնաւոր Հօրմէն։

Ո՛րչափ ուրիշներ աս իրեն եղած բարութիւններէն քիչիկ մը՝ կամ հազիւ թէ մէկ մասը առեր էին։ Բայց ինքը անոնց առածէն տարբեր կերպով ընդունելու ան շնորհքներուն արժանի չէր եղած։ Իրաւցընէ ինքը կը-

զարմանայ՝ որ անոնցմէ եղեր ըլլի դէշ բաներ ընդունած չէ. ինչու որ՝ ան մարդիկներէն շատերը իրենց պարտաւորութիւնը չէին ճանչցեր՝ ինչպէս որ ինքը իր պարտաւորութիւնը ճանչցեր էր ու չէր կատարեր ։

Կըտեսնայ որ՝ Աստուած իր վրայ մեծ համբերութիւն ու երկայնմտութիւն ցուցըցեր էր, զինքը իր բոլոր բարութիւններէն չի զրկելովը՝ որոնք որ ինքը անշահաւոր կերպով գործածեր էր, և անիկա իր մեղքերուն մէջը չի կորսընցունելովը ։

Ու այս ամէն բաներէն ետեւ ինչ մեծ ու զարմանալի սէր ցուցըցեր էր Աստուած իր վրայ՝ և իր մեղաւոր ընկերներուն վրայ, իր մէկհատիկ սիրելի Որդին խրկելովը՝ խաչին վրայ մեռնելու համար, որպէս զի՝ ամէն անոր յուսացողները թողութիւն գըտնան ու փրկըվին ։

Ինքը այս փրկիչին վրայ լսեր էր, այս բարերարաբ ու բարեգութ փրկիչին

վըրայ։ այս մեղաւորներուն Բարեկամին ու Յոյսին վըրայ, այն մահէն ու դժոխ-քէն խալըսող ամենազօրաւորին ու ա-մենակարող փրկիչին վըրայ։ Ինքը ան-կէց հրաւիրուած էր՝ ու նորէն նորէն խըրատուած էր, որ իրեն գայ, իրեն հաւատայ, և իրմով անոր փրկութիւն ըլլայ, և երջանիկ ըլլայ հիմայ՝ ու մինչև յաւիտեան։

Բայց ահա Աստուծոյ բոլոր այս բա-րութիւններուն դէմ ինքը մեղք գոր-ծեր էր։ Քրիստոսի բոլոր այս ողոր-մութիւններուն դէմ ինքը մեղանչեր էր։ Իր այսչափ յանցանքները անանկ մը կըտեսնայ որ ինքը առաջ ամենև-ին ան կերպով չէր տեսած։ Կիմանայ իր վըրայով թէ՝ ինքը մէկ էվելի ան-զգամ ու ապերախտ մեղաւոր մը ե-ղած է։ Ալ իր անշնորհքութեանը վը-րայ միշտ կողքայ. իր յանցանքը կը-խոստովանի Աստուծոյ։ Մէկ պզտի տղի մը պէս կուլայ խոնարհ ու կոտրած սրտով, նորէն դառնալ իր բարերար

Հօրը քովը՝ որն որ ինքը բարեկամացու-ցեր էր ։ Նաև ան իր նախկնաւոր Հօրը ցուցըցած ճամբովը կրթանայ կու-գայ ։ Ինքը գիտէ՝ որ Աստուած զինքը ուրիշ կերպով չի պիտի ընդունի ։ Հապա միայն թէ Տէր Յիսուս Քրիս-տոսին հաւատալովը, և բոլորովին յուսալով անոր բաներուն վրայ՝ որոնք Քրիստոս ըրաւ նեղութիւն քաշելով մեզ Աստուծոյ հետ հաշտեցունելու համար ։

Ասանկով ինքը աս փրկիչին վրայ իր յոյսը կըդնէ, և իրեն մեղքով լե-ցուն ըլլալովը կըհաւատայ Աստուծոյ խոստմունքներուն որոնք Քրիստոսի ձեռքով եղած են ։ Ու ինքզինքը ա-նոր ողորմութեանը ձգելով իր տրտ-մութիւնը ալ էվելօք խորունկ կըլ-լայ, խորհելով որ իր մեղքերն էին՝ որոնց համար ան փրկիչին հարկ ե-ղաւ չարչարանք քաշել՝ ու մեռնիլ ։ Ու իրաւցընէ իր յանցանքը մեծ կերևայ իրեն. և շատ անարգ կերևայ

կապուած մէկ մեծ ընտանիք մը՝ ամէնքը զԱստուած սիրելով ու անոր ծառայելով, և ուրիշներն ալ սիրելով՝ ու անոնց աղէկութեանը ու երջանկութեանը վրայ ուրախանալով ։ Կ՚իմանայ Հիմայ իր վրայովը՝ թէ ինքը աս օրէնքներուն՝ Հնազանդ չըլլալովը շատ կամապաշտ ու գէշ մէկ մըն է եղեր ։ Առաջ ինքը այնպէս կարծեր էր թէ՝ ան օրէնքները խիստ ու ծանր բաներ են ; ու միշտ իր մխիթարութեանը և ընկերութեանը Հակառակ են ։ Բայց Հիմայ Կ՚իմանայ ինքը՝ որ ան օրէնքները ճիշտ անանկ բաներ են՝ որ իր անձին երջանկութիւնը ու ուրիշներուն երջանկութեանը Հետ մէկ տեղ Հաստատելու Համար, և իր երջանկութեանը ու խաղաղութեանը ճամբուն մէջը ինքեն առաջնորդելու Համար յարմար են ։ Կ՚իմանայ որ ինքը իրաւաբար դատապարտութեան տակ ինկած է աս օրէնքները կոտրելուն Համար . և կ՚իմանայ ալ՝ որ ան

դալու Թշուառութիւնէն խալըսելու յոյսը միայն Քրիստոսի վրայ ապաւինելովը պիտի ըլլայ ։

Ու Աստուծոյ դէմ իր առջի ըրած անհնազանդութեանը վրայ կողբայ . և անկէ ետև իր հոգւոյն վրայ ջերմեռանդութիւն մը կուգայ , որով կը փափաքի Թէ՝ ալ ետքի ժամանակը իմանայ լինքը ան ամէն Աստուծոյ իրմէն պահանջած բաները , և կատարէ անոնք մէկ յօժարակամ ու հնազանդ սրտով մը ։

Ու վարը երիկուան տըղաքս՝ էվելօք երկար քննութիւնով պիտի տեսնանք Ճշմարիտ Ողջումին ինչ ըլլալը ։



## ԳԼՈՒԽ · ԺԲ

[illegible]

Դպիրը · Այո, անցած երեկուան հրամանքիդ մեզի բացատրած խօսքէն կերեւայ որ՝ մէկ մեծ փոփոխութիւն մը պէտք է որ ըլլայ մէկ մարդու խորհուրդներուն ու զգացումներուն մէջը, որն որ ճշմարտապէս կը զղջայ մեղքին վրայ :

Այր · Սա՛ իրաւ է տղա՛ս · բայց տակաւին ես զրուցելիք ունիմ ձեզի աս փոփոխութեան վրայ, ուսկից դուք պիտի տեսնաք որ՝ իրաւցընէ շատ մեծ ու զարմանալի բան մըն է եղեր :

Ճշմարիտ ապաշխարողը անանկ

մէջը անարգութիւն ու շփոթութիւն և թշուառութիւն պիտի մնայ : Կիմանայ որ՝ որչափ ինքը մեղք գործեց նէ , այնչափ ան չարիքներուն աշխարհ մնալ տալու մէկ յօժարութիւն մը ցուցըցեր է , և անով Աստուծոյ իշխանութեանը դէմ հակառակ ըլլալ՝ և ուրիշներուն դէշութիւն ընել յօժարեր է : Աս բանը զինքը խորունկ տրտմութիւնով կըլեցունէ . իր մեղքերովը Աստուծոյ դէմ ըրած թշնամութեանը վրայ կողբայ : Իր ըրած մեղքերուն ուրիշներուն տըւած վնասը կողբայ : Ինքը շատ էվելօք կըվշտանայ՝ մտմտալով որ ինքը ուրիշներուն մեղք գործելու վստահութիւն մը տըւած է իր օրինակովը . և ցուցէ իր միջնորդութիւնովը անոնց օգներ է յաւիտենական կորըստեան ճամբուն մէջը յառաջանալու :

Ինքը բոլոր ան խորհուրդներովը

ալ շատ կատէ մեղքը ։ Եւ թէ որ ան մեղքին դէմը խոստացած պատիժներ ալ չըլլային նէ, ինքը այսու ամենայնիւ պիտի ատեր ան մեղքը՝ չարիքներուն ամէնէն գէշը սեպելով ան ։

Եւ իրեն զզուանք կուգայ իր առջի մեղանչական զգացումներէն ու գործքերէն ։ Թէ որ անոնց վրայ մըտմտալու ըլլայ, հարկաւ պիտի ամըչնայ՝ ու ինքզինքը պիտի նախատէ ։ Կիմանայ թէ ինտոր մեղքը զինքը անարգ ըրաւ, ինտոր անպիտան՝ և անկեց ելեր վնասակար ալ եղեր է ինքը Աստուծոյ արարածներուն մէջը ։ Ինտոր ինքը անարժան եղեր է առաքինի ու սուրբ եղողներուն հետ յարգութիւն ունենալու ։

Ինտոր արժանի եղեր է ինքը խըրկըւելու, որ երթայ բնակի յաւիտեանս իրեն պէս ապերախտ ու անարժաններուն հետը ։

Ինքը ուրիշներուն վրայի եղած մեղքն ալ կատէ ։ Կըբաղձայ՝ որ ա֊

նոնք ան մեղքէն ազատ ըլլան ։ Արդյան-կայ՝ որ անանկ ժամանակ գայ, որ ա-մէն ամէնքը իր ըրածին պէս մեղքը առէն, և ան առէնը ինքը ու անոնք ալ ան մեղքը յաղթեն, և այնպէս Աստուծոյ կամքը ըլլայ երկրի վրայ՝ ինչպէս որ Երկինքը կըլլայ նէ ։

Ճշմարիտ ապաշխարող մարդը չու-զէր իր ըրած մեղքերը իր խղճմտան-քէն ծածկել ։ Անիկա կուզէ որ իրեն ինտոր յանցաւոր ըլլալը իմանայ ։

Առաջուց իրեն կամքին շատ դէմ քան էր՝ որ մէկ մը իր մեղքին վրայով իրեն խօսք զրուցելու ըլլար ։ Բայց հիմայ պատրաստ է՝ չէ թէ միայն լը-սել իր պզտըրիկ մեղքը Աստուծոյ ու իր ընկերներուն դէմը ըրած, հապա նաև մեծ մեծ մեղքերն ալ ։ Ինքը հի-մայ հեզութեամբ կընդունի խրատ ու յանդիմանութիւն ։ Արքայձայ տես-նալ ու զգալ իր ամէն մեղքերուն ինչ ըլլալը, և աղօթք կընէ Աստուծոյ՝ որ զինքը կարողացունէ ան մեղքերը ի-

մանալու ։ Անկէ ետք էր ըրած բոլոր մեղքերը Աստուծոյ խոստովանանք կ՚ըլլայ · և աս խոստովանանքը կ՚ընէ՝ մէկ բան մը ետ չի ձգելով ։ Աս խոստովանանքը ինքը կ՚ընէ մէկ կոտրած ու զղջացած սրտով մը · խորունկ խոնարհութիւնով ու տրտմութիւնով կ՚ընէ աս բանը ։ Ինքը գիտէ թէ՝ աս իր խոստովանանքը ինտո՛ր մէկ մաքուր ու սուրբ էակի մը առջև կ՚ընէկոր · և աս ընելովը՝ իր սրտին մէջը կ՚իմանայ թէ՝ պէտք է իրեն որ բոլորովին ինքզինքը Աստուծոյ շնորհքին ձգէ · Քրիստոսի ձեռքովը , որ ներողութեան ու գթութեան հանդըրպի ։

Ճշմարիտ ապաշխարողը նոր կերպով կ՚ընայի ուրիշները երջանիկ ընելու ։

Առաջ ինքը իր գործքովը գուցէ բարի ու հաճոյ էր · գուցէ ճշմարիտ ու արդար էր · գուցէ իր բարեկամները ու իր ծանօթները զինքը շատ սիրեցին ։ Գուցէ անոնք իր վրայով

ասանկ կը խօսէին՝ թէ իրենք կը ցանկայ ու կը ջանայ իրենց մխիթարութեանը ու վայելչութեանը օգնութիւն ընելու ։

Բայց հիմայ իրենք կը տեսնայ թէ՝ ինտոր քիչ հոգ ըրած է անոնց ճշմարիտ երջանկութեանը վրայ ։ Իրաւցընէ՝ իրենք կիմանայ որ ամենեւին հոգ չէր ըրեր ան բաները ընելու ․ որովհետեւ իրենք միայն սա աշխարհիս վըրայ անոնց երջանիկ ըլլալը կը խորհէր ՝ և ոչ ամենեւին հանդերձեալ աշխարհին մէջ սուրբ ու երջանիկ ըլլալնուն վրայ ։

Ասկէց 'ի զատ՝ առաջ իրենք բոլորովին գրեթէ մոռցեր էր բարեկամներուն մխիթարութիւնն ու վայելչութիւնը հոգալ ․ և աս ալ ասոր համար՝ որ անոնց հետ իր երջանկութիւնն ալ կապուած էր եղեր ։ Նա ամենեւին իրենք չէր խորհեր՝ որ իր ունեցածներէն շատը մէկ դի ձգէ՝ և իր քրտինքը մէկ մեծկակ դժուարութեան

մը մէջ դնէ, որով կրնայ բարերա-
րութիւն մը ընել իրեն բարեկամ ու
ծանչւոր չեղողներուն ։

Ըստ իս՝ հիմայ ինքը կը տեսնայ թէ
ինտոր բոլոր աս բաներուն մէջ ինքը
մէկ անձնասէր մէկ մըն է եղեր ։ Ինչ-
պէս ինքը իր ընկերներուն հետ հա-
ղորդակցութիւն ընելուն մէջը մոռ-
ցեր էր Աստուած՝ ու փրկիչը՝ և ա-
պագայ աշխարհը․ և ինտոր բոլորո-
վին զանց ըրեր էր որ իր ընկերները
երջանիկ ընէ՝ անոնց ինքը առաջնորդ
ըլլալովը զԱստուած սիրելու և անոր
հնազանդելու ։ Ինքը հիմայ կը տես-
նայ որ Աստուած զինքը աս աշխարհիս
մէջ դրաւ՝ որ ուրիշներուն բարիք ը-
նէ, ոչ միայն անոնց մարմիններուն՝
հապա իրենց հոգիներուն, ոչ միայն
աս աշխարհիս նայելով՝ հապա գե-
րեզմանէն անդին ալ եկելի իրենց
յաւիտենականին նոր գոյացութեանը
նայելով ։

Ու ինքը կրնայի Յիսուս Քրիս-

տասին վրայ. կըխորհի թէ ինտոր ա-
նիկա աղէկութիւն ընելու վրայ էր.
ինտոր անիկա աս կերպ բաներով Աս-
տուծոյ կամքը ըրաւ, և մեզի ամենուս
օրինակ թողուց իր ըրածը՝ որ անոր
հետևինք մենք ալ: Կիմանայ՝ որ շատ
անհոգ եղած էր ինքը իր պարտաւո-
րութեանը վրայ՝ Քրիստոսի օրինա-
կին չի հետևելովը. և ինքը ա՛ս բա-
նին համար խորունկ տրտմութեան
մէջ կըլլայ: Մանկ իր առջի վար-
քին վրայ կողբայ ինքը, որ իր կեանքը
միայն իր անձին բարութիւնը փնտը-
ռելու մէջ անցուցեր էր. և թէ որ
ուրիշներուն երջանկութեանը համար
բան մըն ալ ըրեր է՛ նէ, շատ քիչ
բան էր ան իր ըրածը: Նոյնը աս բա-
ներուն մէջ կիմանայ՝ որ ինքը չէ թէ
միայն իր ընկերներուն եղած պարտքը
ընելէն ետ կեցեր էր, հապա որ ինքը
Աստուծոյ դէմ ալ մեղք գործեր էր:
Աստուած ինքը անոր համար կենդա-
նութեան մէջ պահեր էր, որ իր

կեանքը ուրիշներուն բարիք ընելով
անցունէ ։ Այլ Աստուած իրեն կարո֊
ղութիւն ու միջոցներ տուեր էր , որ
անոնցմով ուրիշներուն շատ աղէկու֊
թիւններ ընէ ։ Այլ Աստուած իրեն
պատուէրներ էր ուրիշներուն աղէկու֊
թիւն ընելը ։ Նաև քուն իր խղճմը֊
տանքն ալ իրեն սորվեցուցեր էր , որ
ուրիշներուն աղէկութիւն ընելովը՝
ինքը իր անձին երջանկութիւնը շատ
աղէկ պիտի յառաջացունէ ։ Այլ ինքը
իր խղճմտանքէն շատ անգամ նեղու֊
թիւն ու յանդիմանութիւն քաշեր էր
նայելով այն մարդոցը վրայ , որոնք որ
ուրիշներուն բարիք ընելու ետևէ
կըլլային ․ և ինքը տեսեր էր զարմա֊
նալով թէ ինտոր անոնք շատ աղէկ ու
շատ ազնիւ և շատ երջանիկ յառա֊
ջադիմութիւն մը կունենային իրենց
բարեբարութեանը մէջ ։

Վերջապէս ինքը կըտեսնայ այն
առջի ըրած բաներուն ու գործքե֊
րուն մէջ իր կամապաշտութիւնը՝ իր

անօրինութիւնը՝ իր յանցաւոր ընկե-
րը՝ իր Աստուծոյ դէմ ըրած մեղքը :

Եւ ինքը բոլոր զօրութիւնով կը-
փափաքի անկէ ետեւ իր ապառնի
կեանքին մէջը մինակ բարիք ընելու.
ետեւէ ըլլալ իր ընտանեացը՝ ու իր
ընկերներուն : Կը փափաքի սա բա-
րութիւնը ընել ոչ միայն իր ընտա-
նեացը՝ իր ազգականներուն ու բարե-
կամներուն և ծանօթներուն, հապա
ան ամէնուն՝ որոնց ինքը կրնայ մէկ
կերպով մը բարերարութիւն ընել :
Ինքը կըբաղձայ ընել սա բանը ոչ
միայն անոնց, որ իրեն աղէկութիւն
կ'ընեն՝ ու կը ցանկան իրեն բարիք ը-
նել, հապա նոյնպէս հաւասար իր
թշնամիներուն ալ՝ թէ որ թշնամի մը
ունի նէ . ան մարդիկներուն՝ որ բնաւ
չեն կրնար վճարել իր ըրած բարու-
թեանը փոխարէնը . անոնց՝ որ իրմէն
ան ըրածին համար շնորհակալ ալ
չեն ըլլար . նաև անոնց ալ՝ որ իրեն

բարութեանը փոխարէն չարիք կը-
հատուցանեն ։

Պօղէտը ․ Այո՛ , կարծեմ՝ թէ, որ մենք ամէնքս աս կերպ զգացումներ ունենանք , անատեն շատ մեծ երջանիկ ընտանիք մը պիտի ունենանք ։

Անոյշ ․ Այո՛ զաւակս՝ ճշմարիտ է աս ․ թէ որ ամէն զաւկըներ ու ամէն ծնողքներ աս կերպով խորհելու ըլլային նէ , բոլոր ընտանիքները երջանիկ պիտի ըլլան ։ Ու թէ որ բոլոր մարդիկ ասանկ միտք ու խորհուրդ ունենային նէ , ալ ինչ երջանիկ դըրացնութիւն կունենանք մենք ․ ինչ երջանիկ գեղեր ու քաղաքներ , ինչ երջանիկ նահանգ մը , ու ինչ երջանիկ աշխարհ մը ։

Ա՜խ իմ սիրելի՛ զաւկըներս , դուք ասանկ զգայում մը ձեր սրտերնուդ մէջը չունեցաք ։ Նայեցէք ան ձեր անցած կեանքերնուդ վրայ , թէպէտ անոնք այնչափ կարճ էին ։ Նայեցէք թէ ան ձեր ամէն օրվան կեանքերնուդ

մէջի բաները ինչ նիւթեր ունէին ։
ինչ բան ձեռք ձգելու եղաք՝ փորձա-
ռեցիք ։ Պիտի տուած պատասխանց քու-
նէընագելած ատենները ինչ մտմտա-
ցեր էիք մինչև խորհուրդ ընելու , կամ
ան մտմըտացած բաներնիդ ինչ պատ-
ճառի համար ըրել կուզէիք դուք ։

Գուցէ բոլոր օրվան մէջը դուք աս
կամ ան բանը ընելու խորհուրդներ
ունեցած էք ։ Կարելի է որ՝ ուրիշնե-
րուն օգնութիւնը փնտրեցիք ան բա-
ները ընելու համար ։ Կամ գուցէ
վաղվան համար խորհրդածութիւն
ըրեր էք , կամ գալ շաբթըվան հա-
մար , կամ գալ ամըսվան համար ,
կամ գուցէ մէկալ տարըվան համար ։
Սիրտերնիդ աս բաները լմընցունելու
վըրայ դըրեր էիք ։ Ըսանկ յոյս ունե-
ցեր էիք՝ որ անոնք լմըննալու ատենը
շատ երջանիկ պիտի ըլլաք ։ Ու վեր-
ջապէս անոնք չի կատարելով՝ շատ
նեղութիւն քաշեր էիք ։

Հիմայ ամէն աս խորհրդածու-

## ԳԼՈՒԽ ԺԳ.

[illegible]

Այսօր · Տիգրանս, երէկ իրիկուան մեր-խօսակցութեան վերջին խօսքերը ձեզի ցուցուց թէ՝ որչափ սրտմտութիւն կրցեր ճշմարիտ պաշտպանողք իր ընկերներուն խնկական երջանկութիւնը յառաջացունելու համար այնչափ քիչ հոգ ունենալուն վրայ :

Աս բանին հետ մէկտեղ ինքը կը-խորհի թէ որչափ անիրաւութիւն ալ ըրած է ինքը գործողաբար իր ընկերներուն : Ինքը կարելի է որ անոնց առջեւը անանկ բաներ գրուցած կամ ըրած է որ, անանկով իրենց առաջնորդութեան ըրած ըլլայ անհնազանդ

ըլլալու Աստուծոյ՝ և արհամարհելու անիկա , և մեկզի ձգելու ան փրկիչը , և մեղքին ճամբան շարունակ յառաջանալու :

Կարելի է որ ինքը անիրաւ եղած ըլլայ անոնց հետ վարվելուն մէջը , խաբելով անոնք առուտուրի մը մէջ կամ կտրըված գինի մը մէջ , և թէ չի խաբեց ալ նէ՝ գոնէ ան կերպը չըրաւ անոնց , ինչպէս ինքը կուզէ որ նոյնպէս իրեն ընեն անանկ դիպուածներուն մէջը :

Կարելի է որ՝ անանկ բան մը իրեն անյուցած ըլլայ , որն որն իրենը չէր , գուցէ ան բանը գողնալով , կամ ետ չի դարձունելով ան բանը սահմանված ժամանակին : Աւրիշներուն ըստացուածքը կարելի է որ իրմէն վընաս քաշած ըլլան՝ կամ իր կամքովը՝ կամ իր անհոգութիւնովը ու գանց ընելովը :

Կարելի է որ ինքը ուրիշներուն համար դէշ խօսած ըլլայ ստութիւ-

նով , կամ թէ բուն ինչպէս որ էր նէ ճշմարտութիւնը՝ անկէց աւելի խօսած ըլլայ , կամ երբոր հարկաւոր պատճառ մը չի կար ան բանը խօսելուն , և միայն իր կամապաշտ ու չար բաղձանքները հեշտացունել էր ։

Կարելի է որ ինքը ուրիշներուն դէմ իր գործքովը չարագործ եղած էր , և անոնց հետ բարկութեամբ ու բռնութեամբ վարուեր էր՝ ամբարտաւանութիւնով ու արհամարհութիւնով ։

Կարելի է որ ինքը իր ծնողացը և վարժապետներուն ու իրմէ մեծերուն հետ այնպէս չի վարուեցաւ՝ ինչպէս որ արժան էր նէ ։

Կարելի է որ ինքը անոնց հետ անարգութեամբ վարուած ըլլայ , կամ նախատանօք ալ ։ Կարելի է որ ինքը անհնազանդ եղած է անոնց . և մէկ մեծ նեղութիւն մը տուած է անոնց ։

Բոլոր աս կերպ բաներուն վրայ ինքը սրտի մտօք կը խորհի , և ուրիշ

բաներուն վրայ ալ, որոնցմով իր ըն-
կերներուն դէմ դէշ բան ըրած էր։
Ինքը կըճանչնայ թէ՝ խօսքը սա բանե-
րուն մէջ ինքը յանցաւոր եղած է։
Կիմանայ նեղախղիղէն՝ որ ինքը մեղք
գործեր էր, չէ թէ միայն իր ընկեր-
ներուն դէմ՝ հապա Աստուծոյ դէմը։
Վասնզի Աստուած իրեն պատուիրեր
էր, որ իր ընկերը իր անձին պէս սի-
րէ. ու ինչոր կուզէ որ ուրիշները ի-
րեն ընեն՝ անանկ ընէ ինքն ալ ու-
րիշներուն։

Ինքըզինքը կըխոնարհեցունէ Աս-
տուծոյ առջեւը. իր մեղքը կըխոստո-
վանի. անոր վրայ կըտրտմի ինքը.
կաղօթէ՝ որ ալ սա բաները ետքէն
իր շնորհքովը չընէ, հապա հոգ տա-
նի ուրիշներուն երջանկութեանը՝ օ-
գուտին՝ պատիւին ու զգացումներուն
վրայ, ինչպէս որ իրեններուն հոգ կը-
տանի նէ։

Բայց ինքը ալ ասոնց չի կենար,
հապա կըմտածէ՝ առաջնորդութեան

համար Աստուծոյ կաղօթէ · կըհար֊
ցունէ իմաստուն ու բարեպաշտ մար֊
դոցը , որ կընայ իր պարտքը գիտնալ
թէ ինչ ընելու է ան մարդիկներուն ,
որոնց որ ինքը անիրաւութիւն ըրած
էր առաջ :

Երբոր կըգտնայ թէ իր պարտքն է
խոստովանիլ իր ուրիշներուն դէմ ը֊
րած յանցանքը նէ , իսկոյն անդան֊
դամ ան խոստովանութիւնը կամաւ
ու կատարելապէս կընէ , և ներողու֊
թիւն կըխնդրէ : Ասկէց 'ի զատ կը֊
ջանայ ինքը՝ որ իր կարողութեանը
չափ անոնց հատուցում ընէ :

Թէ որ ինքը ուրիշներուն վնաս ը֊
րած է նէ իրենց շահուն կամ գործին
մէջ , ինքը անոր վճարքը կընէ · թէ
որ ինքը ուրիշներուն պատիւին վնաս
ըրած է նէ , կըջանայ ինքը՝ որ ամէ֊
նուն խոստովանի թէ ինչ ճամբով ը֊
րած էր , և որ՝ ինքը ան բանը առանց
պատճառի ըրեր էր , և որ՝ ան բանին
համար ինքը ճշմարտապէս տրտում է :

Վերջապէս շատ կը փափաքի ինքը մէկդի ձգելու ան իր ըրած վնասը, որ ուրիշներուն հոգիներուն հասուցեր էր իր չար օրինակը կամ գործը: Պարապ ատեններ կը փնտռէ՝ որ անոնց քովը երթայ, ու անոնց ընկերութեան մէջ եղած ատենը իր ըրած բանին մեղքը ու սխալը խոստովանի անոնց, եւ անոնք յորդորէ որ իրենց մեղքերը զղջան, Աստուծոյ դառնան: Փրկիչին վրայ իրենց յոյսերնին դնեն, ու ինքզինքնին անոր ծառայելու ուխտեն:

Տղաքս, կուզեմ որ սրտի մտօք ճշմարիտ ապաշխարութեան աս մասին վրայ խորհիք, ու տեսնաք որ դուք կարողութիւն ունիք ներսիդիններդ զգալու եւ ներգործելու՝ ճիշտ ինչպէս որ ես ձեզի խօսեցայ թէ ինչպէս կընէ մէկ ճշմարիտ Զղջացող մը: Շատ անգամ ձեզմէ ամէն մէկերնիդ ձեր օրինակովը ու խրատովը առաջնորդ չեղա՞ք [illegible] արդէօք ձեր մէկ եղբօրը կամ քրոջը, եւ կամ մէկ ուրիշ տղու մը, որ ձեր պատճառաւ սխալ

վկայութիւն ունեցաւ՝ կամ յանցանք ը-
րաւ ։ Ասանկ շատ օրինակներ միտ-
քերնիդ չե՞ք կրնար բերել մի ։ Ձերին
պզտի առուտուրին մէջը ուրիշ տղոցը
ճիշտ ասանկ ըրի՞ք մի՝ ինչոր որ դուք
կուզէիք թէ անոնք ձեզի ընեն ։ Ամե-
նեւին մէկ խաբելու պէս բան մը չըրի՞ք
մի ․ առանց հրամանի ամենեւին ու-
րիշներուն ունեցածը չառի՞ք ու չաւ-
րեցի՞ք մի ․ կամ թէ չի պահեցի՞ք՝
կամ չի կորսնցուցի՞ք մի անիկա ։
Հոգերնիդ եղա՞ւ մի արդեօք , որ ու-
րիշներուն ստացուածքին վնաս չըլ-
նէք դիտմամբ կամ անհոգութիւնով
ու զանցառութիւնով ։ Ինչպէս որ ար-
ժան էր նէ՝ ամէն ատեն ուրիշներուն
վրայով ասանկ խօսեցա՞ք մի ։ Միտ-
քերնիդ չի՞ գար մի ասանկ ժամանակ-
ներ , որ անոնց վրայով սուտ բաներ
խօսած էք , կամ բուն եղածէն աւելի
իրենց ըրած գործքերը գէշ երեւցու-
ցած էք ։ Շատ անգամ ձեր խօսքին ու
գործքին մէջ ուրիշներուն անմարդա-

սիրութիւն չըրի՞ք մի․ և երբեմն չի բարկացա՞ք մի, և անոնց վրայ ծեծի չի վազեցի՞ք մի: Մտմտացէք որչափ շատ անգամ ձեր ծնողացը՝ կամ վարժապետին կամ ուրիշ պատուաւոր մարդոց հետը անվայել կերպով վարւած կամ խօսած՝ կամ բան մը ըրած էք, որոնց հետ որ արժան էր յարգութեամբ ու հնազանդութեամբ խօսւիլ․ և սասանկով որչափ նեղութիւն տըւած էք դուք անոնց:

Հիմայ գիտցած եղէք, որ բոլոր աս բաները Աստուծոյ դէմ մեղքեր են:

Որչափ որ դուք յանցաւոր էք, այնչափ էվելօք պէտք է ձեզի՝ որ աս մեղքերուն վրայ Օղջում ընէք Աստուծոյ առջևը, և խնդրէք իրմէն՝ որ Քրիստոսին համար ձեզի ներողութիւն տայ:

Բայց աս ալ ձեր պարտքն է, որ պիտի խնդրէք նաև անոնցմէ որոնց որ դուք անիրաւութիւն կամ վնաս մը ըրած էք, որ անոնք ալ ձեզի թողու-

Թիւն տան , ու ձեր կարգադրութեանը չափ, իրենց դէմ ըրած մեղքերնուդ հատուցում մը ընէք ։

Բոլոր աս բաներուն վրայ մտմտացէք տըղաքս , ու անկէց սորվեցէք թէ Ճշմարիտ Զղջումը ինտոր մէկ հարկաւոր ու երևելի պարտք մըն է ։

Ուրիշ մէկ նշան մըն ալ կայ , որն որ Ճշմարիտ ապաշխարողը իր մէջը միշտ կունենայ . այսինքն՝

Ճշմարիտ ապաշխարողը կըտեսնայ որ՝ ինչպէս խօսքի ու գործքի մեղքեր կայ նէ , անանկ ալ խորհուրդի ու սրտի մեղքեր կան ։ Իրաւցընէ ինքը ան ալ կիմանայ՝ որուն վրայ որ ամենեւին առաջ ինքը կասկած չունէր . այսինքն՝ ան իր խօսած ու գործած բաները Աստուծոյ առջեւը իր մեղքերուն էվելօք մեծ մասը չեն ։

Ինքը կըտեսնայ որ Աստուծոյ օրէնքները մինչև իր հոգիին վրայ կընայի , ու կըպահանջէ՝ որ իր խորհուրդները ու ներսիդիէն անցածները

անդամ շիտակ ըլլան ։ Ինքը կըստա-
նայ Թէ՝ որչափ սխալ խորհուրդներ
ու զգացումներ ունեցեր էր , ու ա-
սանցմէ որչափ կան որոնք ինքը չէր
ուզեր որ մէկ մարդ մը գիտնայ , և որ
կամըչնար ինքը զըրուցելու իր ամենա
աղէկ բարեկամին ալ ։ Իր միտքը կը-
բերէ Թէ որչափ խորհուրդներ ու
զգացումներ ունեցեր էր ինքը , որոնք
խօսքով դուրս հանելու չէր համար-
ձակեր , կամ իր գործքովը յայտնի
ընել . և որ անոնց համար իր խղճմ-
տանքն ալ զինքը շատ սաստիկ նա-
խատեր էր ։

Ուրիշ խորհուրդներ ու զգացում-
ներն ալ կան . այսինքն , իր ամբարտա-
ւանութիւնը , իր ունայնութիւնը , իր
նախանձութիւնը , իր ոխակալութիւ-
նը , իր սրդողկութիւնը , իր դըժգո-
հանքը , ու ասոնց նման բաները , ո-
րոնց վըրայ ինքը անատեն շատ չէր
մտմտացեր , բայց հիմայ ինքը կըստա-
նայ որ անոնք մեղք են եղեր ։

Կրտեսնայ որ ինքը ասանկ խոր_հուրդներու ու զգացումներու վրայ հաճութիւն ունենալովը՝ էվելօք պարտաւոր է եղեր յանցանք գործելու. Եւ որ եթէ մենք բոլոր խորհուրդները ու զգացումները կրնանք աղէկ պահե_լու, անկէ ետև մեր խօսակցութիւնը ու գործքերն ալ շիտակ կըլլայ ։ Կըրտես_նայ որ այնպէս կատարեալ մաքուր ու սուրբ էակ մը՝ որ է Աստուած, մեծ ատելութիւնով կընայի ասանկ պիղծ խորհուրդներուն ու զգացումներուն վրայ. ուրեմն որչափ և ինչ չափ իր վրայ ալ պիտի նայի ատելութեամբ ։

Ու ասոնք միտքը բերելովը՝ կը_խոնարհի ինքը՝ ու խորունկ տրտմու_թեան մէջ կըլլայ ։ Կիմանայ թէ ինչ_պէս յանցաւոր եղած էր ինքը Աստու_ծոյ առջևը, երբոր ուրիշներն ալ ի_րենց վրայով աղէկ բան կըխորհէին ։

Չերկընցունենք, իր ըրած զղջու_մը մինչև անգամ իր հոգիին ներսի_դին կըմտնայ. և սա զղջումը կըշինէ

իր մէջը եղած ամէն ծածուկ խորհուրդներուն ու զգացումներուն , իր կարծիքներուն , իր բաղձանքներուն , իր ցանկութիւններուն , իր վախերուն , իր յոյսերուն , բոլոր ան գաղտնի գործքերուն՝ ու իր սրտին շարժմունքներուն վրայով ։

Ու կրցանկայ ինքը մաքուր ըլլալու սրտովը ։ Կրխնդրէ՝ որ Աստուծոյ Սուրբ Հոգին բոլոր իր խորհուրդները ու զգացումները ուղղէ , և օգնէ ու զօրութիւն տայ իրեն , որ կրնայ մէկդի ձգել իր հոգիէն ան ամէն պիղծ բանը՝ որ չունենայ Աստուծոյ անհաճոյ եղած խորհուրդները ու զգացումները , կամ անանկ խորհուրդները՝ որ իր ընկերներուն գիտցունելու վախնայ ։

Ճշմարիտ Օղջում ընողը կիմանայ որ քանի մը մեղքեր կան՝ սրտով եղեր կամ գործքով , որ անոնց տակը իյնալը շատ դիւրին է իրեն ։

Դուք գիտէք տղաքս , որ ձեզի ալ անանկ կուգայ ։ Օրը օրինակ՝ գի_

տէք թէ ինչպէս դիւրութեանը Նոր-մաղ իր խաղին համար զանց ընել կըր-նայ իմ իրեն զրուցած բանս՝ որ պիտի ըլլըլվէր շուտով առնէն չանցած ; և որչափ շատ ժամանակ ինքը աս բանին համար յանդգնմանը եմ ես :

Ու Նախմայրին ալ յանցանքը ան է , որ ուրիշներուն վրայ յանցանք դըր-նալ կըրնայի : Գրիգորին ալ ան է՝ որ իր եղբօրը ու քըրոջը անվայել կերպով կըհրամայէ , ու ան ալ՝ մէկ մեծ իշխանութիւնով մը , որպէս թէ տանը գլխաւորը ինքն է :

Մեծ մարդիկներն ալ աս կերպ մեղքերի ունին , որ անոնց տակը իյնա-լը շատ դիւրին է : Բանի որ դուք ալ մեծնաք՝ աս բանին ճշմարիտ ըլլալը պիտի իմանաք ձեր վրայ նայելով : Պիտի իմանաք որ՝ Թէպէտ և ճշմար-տապէս ապաշխարելու ըլլաք անանկ մեղքերուն վրայ , բայց բոլորովին ա-նոնք յաղթելը մեծ բան մըն է . և որ

անոր համար պէտք է ձեզի՝ որ ամէն իժէր Աստուծոյ աղօթենք իր Սուրբ Հոգիին օգնութեանը համար ։

Ճշմարիտ Օղջում ընողը ինքըզինքը Աստուծոյ առջեւը կը խոնարհեցունէ իր կարեւոր մեղքերուն համար ։ Անոնք ամէնը կը խոստովանի ինքը խորունկ տրտմութիւնով ։

Երգարմանոյ որ առաջ ինքը ան մեղքերը չէր տեսեր՝ ինչպէս որ հիմայ կը տեսնակոր ։ Աղօթք կընէ՝ որ կարենայ բոլոր անանկ մեղքերը գըտնալ , որոնց տակը որ իրեն լինալը շատ դիւրին է ․ և որ կարենայ ինքը ան մեղքերը պայծառ ու ներգործութեամբ տեսնալ , թէ ինքը անոնք Աստուծոյ դէմ գործեր է , և որ անոնք իր անձին ու ուրիշներուն վնասակար բաներ են ։

Աստուծոյ զօրութիւնովը , Քրիստոսի հաւատքովը՝ ու ամէն օրվան ըրած ջերմեռանդ աղօթքովը՝ որ իր Սուրբ Հոգիին օգնութիւնը կը խնդ-

ընէր, ու կրակրակի ինքը աս մեղքերուն հետ կռուիւ ընել ։

Նոյն կռիւը խեկեխակ կրակրակի՝ նոյն օրը ու նոյն ժամը, որ ինքը ներսրտին Ճշմարիտ Ողջումը կուձեռնայ ։ ան կռիւը կրակրակէ նոյն վայրկեանը՝ որ ինքը նորէն յօժարութիւն մը կըմանայ աս մեղքերը գործելու ։ Ու աս կռիւը ինքը կրակրակի ընել, կամ խորհրդով կամ խօսքով և կամ գործքով եղած մեղքերուն դէմը ։ Թէ որ աս կերպ փափաք մը ու աղօթք մը ու ջանք մը ասանկ մեղքերը յաղթելու համար չըլլայ նէ, Ճշմարիտ Ողջում չի կրնար ըլլալ ։

Տղաքս՝ դուք նշան դրէք իմ ըսած բաներուս, ու ամենուն անոնք միտքերնուդ մի՛ հանէք ։

Երմոդը Թէ որ ինծի ըսէ որ, ինքը իր մեղքերուն վրայ հաստատ կերպով Ճշմարիտ Ողջում ըրած է ։ բայց տակաւին իր գործքէն կերեւայ որ՝ ինքը Աստուծոյ աղօթք չէ ըրեր,

և որ ջանք չէ ըրեր իր սովորած յան-ցանքը մէկդի ձգելու՝ իմ պատուէրնե-րուս իսկոյն հնազանդելովը , ասկէց ստոյգ է որ՝ ինքը իր ներսիդին ճշմա-րիտ Զղջումի պէս բան մը չէ զգա-ցեր ։

Եւ թէ որ Նազքան ալ զրուցէ որ՝ իր առջի սորված մեղքին վրայ ճշմա-րիտ Զղջում ըրեր է , բայց միշտ իր նոյն բնաւորութիւնը գործածէ նէ ու-րիշներուն յանցանքը գտնալու , ինչ մեծ սխալ պիտի երևայ իր մէջը ։

Ու թէ որ Գրիգորն ալ յուսայ՝ որ ինքը ճշմարտապէս Զղջացեր է իր մեղքերուն վրայ , բայց առջի պէս իր անվայել կերպով իշխանութիւն ընե-լու ճամբան ձեռք առնէ՝ իր եղբօրը ու քրոջը հրամայելովը , ո՜վ անտա-րակոյս կերևայ՝ որ ինքը տակաւին ճշմարիտ Զղջումին ինչ ըլլալը չէ գիտցեր ներգործութեամբ ։

Ճշմարիտ Զղջումին հետ միշտ պիտի ըլլան ջերմեռանդ փափաքներ՝

ու աղօթքներ՝ և ջանքեր, որ յաղթեն մեղաւորին բնութեանը սիրած մեղ-քերը՝ որոնց տակն որ իրեն կյնալը շատ դիւրին է. և ասանկով ան ըղ-ձումը յայտնի երևայ իրեն՝ նեղգոր-ծարար ան մեղքերը յաղթելովը ։ Քանզի Աստուած ան ճշմարիտ զգ ջա-ցող մարդը անշուշտ կըզօրացունէ, որ աս յաղթութիւնը կարենայ ընել ինքը անոր շնորհքովը ։



## ԳԼՈՒԽ ԺԳ։

---

Ճշմարիտ Օղջման ընողը Աստուծոյ շնորհօքը կը սկսի բարոյականին մէջ բարեկարգութեան մը ընել իր վարքին։ Ինչպէս [illegible] գործեր կը ըն-ռու կաշխատի իր կեանքին մէջը։

Անոր · Տէրը ալքս , մեր երէկվան խօսակցութեանը մէջ ճշմարիտ Օղջման ընողին իր բնութեան շատ սերած մեղքերը յաղթելուն վրայով քօլոր ան զրուցածներէս 'ի զատ' կուզեմ որ աս ուրիշ մեծ հարկաւոր բանն ալ միտքերնիդ բերէք · այսինքն , ան Օղջացողը' Աստուծոյ զօրութիւնովը իր միտքը պիտի դնէ որ բոլոր մեղքերը մէկ դի ձգէ , ու խսկոյն իր սրտին մէջ կատարեալ նորոգութեան գործ մը սկըսի ընել ։ Որ աւիկա է ահա ճշմարիտ Օղջումին ըլլալուն շատ աղէկ ու էվէլօք յայտնի նշանը ։

Դուք տեսաք, թէ ճշմարիտ ապաշխարողը ինքզինքը ինչոր մեծ մեղաւոր մը ըլլալ կիմանայ ներսիդիէն, ու Աստուծոյ առջև իր անձը կըխոնարհեցունէ ան պատճառաւը, ու յանցանքին համար կըտրտմի։

Մինչև սա դղջումին օրը ու ժամանակը իր մեղքերը շատնալու վրայ էին։ Իր խորհուրդները, իր շարժմունքները, իր խօսակցութիւնը, իր վարքը մեղանչական եղած էին։

Ո՜հ դէշ ունակութիւնով ինչպէս սա մեղքերուն զօրութիւնը կուժովնայ։

Բոլոր սա ունակութիւնները արդեօք մէկ օրվան մը մէջ, մէկ ժամու մը մէջ, մէկ վայրկեանի մը մէջ կըրնա՞յ մի մէկ դի ընել ան դղջումը՝ որ թէպէտ զօրաւոր ու ճշմարիտ եղած ալ ըլլայ։

Ո՜չ, հիմայ ճշմարիտ դղջացող մարդը շուտով պիտի գտնայ որ անանկ չէ։ Կիմանայ՝ որ իր առջևը մէկ մեծ

գործ մը կայ · այսինքն՝ զօրաւոր թշնամի մը ունի , որ ինքը անիկա պիտի յաղթէ ։ Ինքը մեղքին դէմ կռուելու է մինչև իր մահուան ժամանակը , և ինքը սա կռիւը կըսկըսէ ընել իսկ և իսկ ։ Աստուծմէ կըյուսայ իր Սուրբ Հոգիին օգնութիւնը · կըջանայ՝ որ իր խղճմտանքը լուսաւորէ՝ Աստուածաշունչը կարդալովը , և իր սիրտը քննելովը ։

Պահքով ու ջերմեռանդութիւնով նոր բարեկարգ գործի մը կըսկըսէ ։

Ու ասկէց ՚ի զատ՝ ամէն մարդիկ իր վրայով յայտնի կըտեսնան թէ ինքը սա նորոգութիւնը սկըսեր է ։ Անշուշտ անոնք պիտի տեսնան , որովհետև անիկա այնչափ պայծառ ու յայտնի է ։

Իր ընտանեաց մէջը , իր դրացիներուն մէջը , իր գործին մէջը , իր բոլոր կենցաղավարութեան մէջ ուրիշներուն հետ՝ աղէկի դառնալու մէկ երևելի փոփոխութիւն մը յայտնի

նանց՝ որոնք իրեն անիրաւութիւն ը-րած են , ու կըջանայ անոնց աղէկ ը-նել ։ Ինքը իր առուտուրին մէջ անի-րաւութիւն մը չըներ ․ բոլոր իր գոր-ծառնութեանը մէջ իր օգտին համար ուրիշներուն վնաս չըներ ։ Ինչպէս որ ինքը կ'ուզէ՝ որ ուրիշները իրեն ընեն , անանկ ինքը կ'ընէ ուրիշնե-րուն ։

Կարելի է որ ինքը երբեմն աս բա-ներուն մէջ շատ կամ քիչ պակասու-թիւն կունենայ ․ բայց ոչ ժամանակ որ ասանկ պակասութիւն մը ընելու ըլ-լայ , նորէն ինքը զղջում կ'ընէ ան ը-րածներուն վրայ ․ շարունակ կ'երկրպա-գէ՝ որ յաղթութիւն ընէ ինքը ․ իրեն Քրիստոսի վրայ տնկուած հաւատքը զինքը կը քաջալերէ աս յաղթութիւնը ընելու ։ Ան իր բոլոր ներքինին ու վարքին մէջ եղած աղէկ փոփոխու-թիւնը ետեւէ ետեւ յայտնի ըլլալու վրայ կ'ըլլայ տարուէ տարի , ամսէ ա-միս , օրէ օր ։

կեղծիք մը այնպէս ընէք․ բոլոր այս բանե-
րը Թէ որ մէկ նորոգութիւն մը չի
տեսնամ ձեր վրայ , ես պիտի մտա-
ծեմ որ միայն խղճմտանքին քէշ մը
վախ ու դողն է , բայց չէ Թէ ճշմարիտ
Զղջում մըն է ։

Նա ձեզի տուած կանոնն՝ որով
ճշմարիտ Զղջում ըլլալն ու չըլլալը
կըզգաէք , Յիսուս Քրիստոսի նոյն
ըսած բանն է՝ որ երբ ինքը աշխար-
հիս վրայ էր , տուաւ մեզի ըսելով
Թէ՝ «Իրենց պտուղներէն պէտք է որ
ճանչնաք անոնք» ։

Ինչ ծառ ըլլալը անոր բերած պը-
տուղէն կըզգաէք դուք ։ Ա․ է որ պը-
տուղը գէշ ըլլայ նէ՝ կըսէք Թէ ծա-
ռը գէշ է ։ Ա․ է որ պտուղը աղէկ ըլ-
լայ՝ կըսէք որ ծառը աղէկ է ։

Ճշմարիտ Զղջումը պէտք է որ ա-
ղէկ պտուղ բերէ սրտին մէջ , խօ-
սակցութեանը մէջ , ու գործքին մէ-
ջը ։ Նա զղջումը ինչպէս մեծ բանե-
րու մէջ պտուղ կուտենայ՝ անանկ ալ

պզտիկ բաներուն մէջը պէտք ունե-
նայ ։ Ինչպէս որ մեր բրած աղօթք-
նուս մէջը , կամ Աստուծոյ ծառայե-
լու համար բրած ջանքերնուս մէջը ,
և աշխարհիս մէջ Քրիստոսի Թագա-
ւորութիւնը հաստատուելու համար
բրած խնդիրքներնուս մէջը , անանկ
ալ մեր բոլոր ամէն օրվան մեր ըն-
կերներուն հետ վարվելնուս ատենը ,
ընտանեաց մէջը , ու հասարակ գործ-
քերնուս մէջը պտուղ պէտք ունե-
նայ ։

Տակաւին ես ուրիշ քանի մը բա-
ներ ունիմ ձեզի զրուցելու , որով
դուք կարենաք դատել Թէ բրածնիդ
Ճշմարիտ Զղջո՞ւմ է մի՞ Թէ չէ ։ Այ-
սինքն ՝ Ճշմարիտ զղջացող մարդը
մէկ նիւթ մը պէտք ունենայ իր միտ-
քին մէջը , որուն համար որ իր անձը
նուիրէ ու ընէ ան , ու ան բանին վը-
րայ առաջ իրեն հոգը չէր · այսինքն
է՝ որ բոլոր մարդիկ Քրիստոնեայ
ըլլան ։

Հիմակ ինքը կըտեսնայ որ՝ աս ան-
բանն էր, որուն համար որ Քրիս-
տոս աշխարհ եկաւ, և որ աս բանը
ըլլալովը Աստուած պիտի փառաւորէ
և բոլոր մարդիկ երջանիկ պիտի ըլ-
լան: Կըտեսնայ որ՝ եթէ Աստուածա-
շունչը բոլոր մարդիկ ունենան, ու
թէ որ ամէնքը սիրեն ու հնազանդին
ան գիրքին, աս աշխարհը շատ տար-
բեր մէկ աշխարհ մը պիտի ըլլայ հի-
մակվան եղածէն: Պիտի նմանի եղ-
բայրներու ու քոյրերու մէկ մեծ ըն-
տանիքի մը, որուն գլուխը Քրիս-
տոս ըլլալով՝ ամէնքը անիկա յարգեն
սեպեն՝ ու անոր հնազանդին. և ամ-
մէն մէկը ջանան՝ որ մնացածներուն ալ
աղէկ ու երջանիկ ըլլան:

Ինքը կըզարմանայ ու կըտրտմի՝
որ առաջ բնաւ անիկա չէր տեսաւ ու
չըզգաց: Բայց հիմայ ինքը կըտես-
նայ ու կիմանայ թէ՝ ինչ մէկ կամա-
պաշտ ու մեղաւոր սիրտ ունեցեր է
ինքը, որ աս մեծ ու փառաւոր բա-

ներուն վրայ ինքը անփոյթ եղաւ ։ Մանաւանդ իր հոգը չէր եղած ուրիշներուն հոգեւոր աղէկութեանը ու յաւիտենական օգտին համար ։ Իրեն ալ իր պարտքը զանց ընելուն և իր անձը սիրելուն վրայ կը տրտմի ալ ինքը ։ Աստուծոյ կը խոստովանի իր մեծ յանցանքը ։ Ալ կ՚արթըննայ իր ծուլութենէն՝ աղօթելու ու փրկիչին ծառայելու ջանալու համար ։

Ինքը նաև կը ջանայ որ իր կեցած տեղը , կամ իր ընտանեաց մէջը՝ ու բարեկամներուն ժողովքին մէջը , ամէն մեղաւորները Յիսուս Քրիստոսի առաջնորդէ՝ անոր վարդապետութեններուն հնազանդելով ։ Ինքը պատեհ ժամանակներ կը գտնայ անոնց հետը խօսելու համար , և անոնք կը յորդորէ որ դեղջի գան՝ ու յոյսերնին փրկիչին վրայ դնեն ։ Ամէն օրուան իր աղօթքին մէջը անոնք կը յիշէ ։ Աստուծմէ խնդրելով՝ որ անոնց իր Սուրբ Հոգին տայ , և անոնց ցուցը-

նէ զինքը տիրել ու իրեն հնազանդե-
ցնել :

Մէկ ուրիշ հարկաւոր ճամբով
մըն ալ ջանք կընէ՝ որ Աստուծոյ
Թագաւորութիւնը բոլոր մարդոց սըր-
տին մէջը հաստատէ , այսինքն՝ իրեն,
բարի օրինակ ըլլալովը : Կըջանայ՝
որ ցուցընէ թէ ինքը Աստուծոյ հո-
գին ունի , և որ՝ ինքը կըցանկայ ու-
րիշները աղէկ ընել , ամենուն վրայ
խոնարհութեամբ ու բարերար ըլլալով իր
ամէն օրվան ըրած կենցաղավարու-
թեանը մէջը ու գործքերուն մէջը :
Ինքը շատ կաշխատի , որ բոլոր իր
գործքերուն մէջը համարձակ ըլլայ՝
համեստ ու արդար ըլլայ : Կուզէ եղե-
լօք՝ որ ուրիշներուն շահ ընէ , քան
թէ իր անձին վերաբերեալը նայի .
և շատ աղէկ խոնարհութեամբ կընէ ու-
րիշներուն նոյն բանը՝ ինչպէս որ ին-
քը կուզէ որ ուրիշները իրեն ընեն :
Ինքը պատրաստ է օգնութիւն ընելու

նէ մարդոց մարմիններուն ու հոգինե-
րուն բարիք ընելով :

Աւստի սիրելի՛ զաւակներս, Թէ որ
դուք մեղքերնուդ վրայ ճշմարտապէս
զղջալու որ ըլլաք, այն ատեն բաղձան-
քը պիտի ունենաք սրտերնուդ մէջը :
Պիտի փափաքիք ու պիտի աղօթէք,
որ Քրիստոսի թագաւորութիւնը աշ-
խարհիս մէջ հաստատուի : Այնչափ որ
կրնաք հասկընալ ձեր ընելու պարտա-
քերնիդ՝ այնչափ պիտի աշխատիք,
ու հոգ պիտի ընէք անոնք կատարելու
որչափ պատեհութիւն որ ունենաք-
նէ : Պիտի աշխատիք ուրիշներուն
բարիք ընելու, որ տեսնան թէ դուք
Քրիստոսի հոգին ունիք, և անոնք
ալ ձեր օրինակովը սա փրկիչին վրայ
յուսերնին դնեն՝ ու սիրեն զինքը՝ և
հնազանդին անոր :

Թէ որ ձեզմէ մէկը ինծի զրուցելու
ըլլայ թէ՝ դուք կը յուսաք որ զղջում
ըրած էք մեղքերնուդ վրայ, բայց ես
պիտի տեսնամ որ դուք Քրիստոսի

Ա՛յս . Ա՛ն որ ճշմարտապէս իր մեղ-քերուն վրայ զղջում ընելու կըսկը-սի , այնչափ ժամանակ զղջում ընե-լու վրայ պէտք ըլլայ՝ մինչև որ մէկ հատ ունեցած մեղքն ալ մէկ դին ձգե-լու ըլլայ : Վնասքն ու պատճառները՝ որոնց համար որ սա զղջումը կընէ ամէն օր , նոյն պատճառներուն համար պէտք պարտաւորի շարունակ զղջա-լու վրայ ըլլալ :

Մեղքը միշտ ատելի է Աստուծոյ առջևը՝ ո՛ր մարդոյը վրայ գըտնը-վելու ըլլայ նէ ան՝ թէ՛ ապաշխարող-ներուն և թէ անապաշխարներուն վը-րայ , և ինչ տեսակ բաներու մէջ որ ըլլայ նէ՝ եթէ մեծ ու եթէ պզտիկ :

Թէ որ ձեզմէ մէկը երբէք ինծի ան-հնազանդութիւն ըրած ըլլար , և ա-նոր համար հիմայ ճշմարիտ զղջում ընէք , և ինծմէ ներողութիւն խնդը-րելու ըլլար նէ , անիկա պատճառ կըլլա՞յ մի՝ որ նորէն ջաղը ըրած-նուդ վրայ տրտմութիւն մը չունենաք

մեղքի մէջ որ է որ պիտի առաջ քա-
լէր երթար : Ինքը որ է որ մեղքի մէջ
պիտի կարծրանար ; ու յաւիտենական
կործանման ճամբուն մէջը պիտի մը-
նար :

Անիկա գիտէ թէ Հոգին Սուրբն
է՝ որ իր աչվըները բացաւ՝ իր միտ-
քին աչվըները , որ տեսնայ իր յան-
ցանքը ու վտանգը . նաև նոյն ինքն
է որ իրեն առաջնորդեց մէկ ամե-
նակարող զօրութիւնով ու ներգոր-
ծութիւնով մը , որ դառնայ ինքը առ
Աստուած՝ իր մեղքերը ապաշխարելու
ու իր յոյսը Տէր Յիսուս Քրիստոսին
վրայ դնելու : Արդգայ ինքը թէ նոյն
Հոգին է՝ որ պիտի օգնէ ու զօրու-
թիւն տայ իրեն իր պարտքը ընելու՝
փրկիչին մէկ հաւատարիմ աշակեր-
տին պէս : Ինքը կիմանայ ներսիդին
որ՝ թէպէտ պիտի ջանք ընէ ինքիրմէն
յաղթելու ան բոլոր մեղքերը , և ան-
եկած ամէն փորձութիւնները յաղթե-
լու , բայց իր զօրութիւնք տկար է :

ինքը Պաւղոսին ըսածին պէս կըսէ , “ Քրիստոսի ձեռքով՝ որն որ իս զօ֊րացուց , ամէն բան կրնամ ընել ” . Փիլ . դ . 13 :

Ամէն իմէր ինքը աս աստուածային օգնութեանը համար աղօթք կընէ : Կիմանայ որ ինքը Աստուծոյ վրայ կա֊խում ունի , բայց երբ կըսկըսէ ըզ֊զալ իր զօրութեանը շատ երևիլը և կըմոռնայ իր Աստուծոյ վրայ ունե֊ցած կախումը , ինքը կիմանայ որ նոյն ատենը փորձութիւնը իր վրայ մեծ զօրութիւն ունի , և թէ՝ ալ ինքը մեղքի մէջ իյնալու մեծ վտանգին մէջն է :

Անկէց ինքը իմաստութիւն կը֊սորվի , և որչափ ատեն ապրի՝ էվե֊լօք ջերմեռանդ կըլլայ իր շարունակ աղօթքը . որ “ Աստուած զօրութիւն տայ իր Հոգիովը հաստատվելու ներ֊քին մարդուն վրայ ” , ( Եփես . գ . 16 : ) իր բոլոր խորհուրդներուն վը֊

րայ , զգայութիւններուն վրայ , բաղ-
ձանքներուն վրայ , առաջադրութիւն-
ներուն վրայ ։

Կըյիշէ՛ նաեւ Աստուծոյ խոստմունք-
ները իր քաշած փորձութիւններուն
ու նեղութիւններուն ժամանակը ,
« Անոնք որ Տէրոջը վրայ յոյսերնին
դրած ունին , իրենց զօրութիւնը պի-
տի նորոգեն » ։ Եսայ . Խ . 31 ։ « Մի՛
վախնար , ինչու որ ես քու հետդ
եմ . մի՛ զարհուրիր ինչու որ ես քու
Աստուածդ եմ . ես քեզ կըզօրա-
ցունեմ՝ ու քեզի օգնութիւն կընեմ .
ու ես քեզ կըբռնեմ իմ արդարու-
թեանս աջ ձեռքովս » ։ Եսայ . ԽԱ .
10 ։

Վերջին բանը որ պիտի ցուցը-
նեմ՝ որ միշտ ճշմարիտ ապաշխարու-
թեան հետ կերթայ , ան է որ Քը-
րիստոսի քաշած բաներուն վրայ բո-
լոր սրտանց մէկ ապաւինութիւն մը
ըլլայ մեղքի թողութեան համար ու
Աստուծոյ ընդունելի ըլլալու համար ։

Ճշմարիտ ապաշխարողը կըզգայ թէ՝ իրեն Օզջումովը չի կրնար իր մեղքերուն համար հատուցում մը ընել Աստուծոյ ։ Ինքը գիտէ որ իր առած թողութիւնը Աստուծոյ շնորհքովը պիտի ըլլայ ։ Ինքը իրաւամբք թողութիւն չի կրնար խնդրել ․ կամ ինքը չի կրնար ըսել որ՝ ապաշխարելովը անանկ բան մը ըրած էր՝ որուն որ իրեն ներողութիւն տալ տար ։

Ինքը ան ներողութեանը արժանաւոր ըլլալու մը պէս չի կրնար խնդրել ան՝ իրեն մեղքերը ապաշխարելովը աղէկ բան մը ընելուն պատճառաւը ։ Քանզի ապաշխարելը ուրիշ բան չէ․ միայն թէ իր պարտաւորութիւնն է ։ որ իրեն արժան է որ ինքը պիտի ընէ՝ թէ որ ինքը շնորհք մըն ալ Աստուծմէ ընդունի նէ ․ իրաւցունէ իր պարտաւորութիւնն է՝ թէ որ ինքը իր մեղքերուն համար Աստուծոյ սպառնացած ամէն պատիժները ընդունելու ալ ըլլայ ։ Թէ որ մէկ մարդ մը գէշ

բան մը ըրած ըլլայ՝ թէ զղջութիւն ըրած ըլլայ՝ կամ մէկ մը սպանած ըլլայ՝ ու ըրածին համար պատիժ մը քաշէ որն որ օրէնքը սպառնացած է ասանկ անիրաւութեան մը դէմ, այլ պէտքը չէ՞ մի իրեն՝ որ ճշմարտապէս զղջում ընէ իր յանցանքին վրայ ։

Տղաքս՝ շատ անգամ դուք գիտէք որ՝ ես պարտաւոր եղեր եմ ձեր ըրած յանցանքնուդ համար ձեզ պատժելու՝ թէպէտ դուք շատ տրտմած ըլլալ կերեւաք անոր համար, ու քնամէյմալ անանկ բան մը չընել կըխոստանաք ։ Ան ձեր տրտում ըլլալը իմ պատիժէս խալըսելու իրաւունք մը չէր տրւաւ ձեզի․ և ձեզ պատժելս իմին մէջ յանցաւոր ու անիրաւ ըլլալս չէր ցուցուց ։ Նաև ձեր տըրտում ըլլալն ալ տեսնալով ձեզ պատժելս չէր ցուցուց՝ որ ես անիրաւ ալ էի ։

Քանզի կարելի է որ՝ ես տեսայ թէ ընտանեաց աղէկութեանը համար կա-

ապերախտս հարկաւոր էր ան ձեր
պատժելիքը , Թէպէտ և դուք ցա-
կանեցաք ու աղէկ ըլլալ ալ խոստա-
ցաք :

Թէ որ ալ ես ատեն մը ձեզի նե-
ղում ըրի նէ՝ անիկա մէկ կատարեալ
շնորհք մըն էր ձեզի : Ձեր տրտում
ըլլալը իրաւունք չէր տրւաւ ձեզի՝ որ
ներողութիւն պահանջէք ինծմէ ի-
րաւամբք :

Մեր մեղքերնուս թողութիւն ըլ-
լալը Աստուծոյ կողմանէ՝ մէկ սոսկ
շնորհայ գործ մըն է : Թէ որ ինքը
մեղաւորներուն ատ շնորհքը ցուցը-
ցած չըլլար . մենք տրտունջ ընելու
իրաւունք մը չի պիտի ունենայինք :
Դուք տրտունջ ընելու իրաւունք մը
չունիք՝ Թէ որ ձեր յանցանք գործած
ատենը ես ձեզ պատժեմ նէ . քանզի
գուցէ կը տեսնամ որ ընտանեաց բա-
րութեանը համար հարկը կը պահան-
ջէ որ ես ան բանը ընեմ :

Թէ որ Աստուած վճռէր , որ իր
ընդհանուր ստեղծած բոլոր արարած-

ներուն մեծ գերդաստանին բարու_
թիւնը կըպահանջէ՝ որ տանց մէջ
ներողութեան մը պատճառ ըլլին ան ամէն
իր օրէնքը կոտրողները, մենք անա_
տեն ամենևին չենք կրնար գանգատ
ընել թէ՝ աս մէկ անիրաւ ու անբարի
գործ մըն է իր կողմանէ։ Բայց ինքը
Աստուած անանկ մէկ ճամբայ մը գը_
տաւ, որով ինքը միանգամայն արդար
կրնայ ըլլալ իր իշխանութեան զօրու_
թիւնը պահելով, և իր ողորմութիւնը
նաև մեզի ցուցընել. աս է, Տր Սրտէն
(Յիսուսի Քրիստոսի խաչին վրայ մահուամբ։

Անոր մահուանը համար կրնայ Աս_
տուած հիմայ մեր մեղքերը թողուլ։
Ինքը անանկ կըսէ Աստուածաշունչին
մէջը, և ինքը կըցըուցէ մեզի որ՝ ե_
թէ մենք հաւատանք անոր զըրուցած_
ներուն, և ճշմարտապէս տրտմու_
թիւն ունենանք ներսիցինիս մեղքեր_
նուս համար, և յուսնինիս Քրիստո_
սի մեր մի միայն փրկիչին վրայ դնենք
նէ, ինքը մեզի ներում կուտայ։

Աստուած ալ նաև մեզի յայտնի կըզգըուցէ, որ սա է միայն ճամբան՝ որուն մէջ որ ինքը մեզի իր շնորհքը կըցուցընէ ։

Ինքը շատ հարկաւոր պատճառներ ունի ասանկ ըսելու ։ Իր իմաստութիւնը՝ իր արդարութիւնը՝ իր սըրբութիւնը՝ իր բարութիւնը կըպահանջէ որ՝ ինքը միայն աս կերպով ցուցընէ իր շնորհքը ։

Հիմայ թէ որ մենք գիտնանք բոլոր աս ամէնը, և թէ որ Աստուած ալ մեզի պատուիրեր է Տէր Յիսուս Քըրիստոսին հաւատալ որ փրկութիւն գտնանք, դուք պիտի տեսնաք տըղաքս՝ որ ճշմարիտ Օղջում չէք կրնար ընել՝ թէ որ նոյն ժամանակը յոյսերնիդ Քրիստոսի ձեր մի միայն փրկիչին վրայ չի դնէքնէ ։ Ինտո՞ր դուք ճշմարտապէս տրտում եղած կրնաք ըլլալ ձեր անհնազանդութեան ուրիշ գործքերնուդ համար՝ որ Աստուծոյ դէմ ու անոր իշխանութեանը

հակառակ ըլլած ըլլայ , թէ որ դուք իր հրամանքին չի հնազանդիք՝ և իր իշխանութեանը չէք հպատակիք բուն այս մասնաւոր բանին մէջը ։

Եւ այս նիւթին վրայով ձեզի ա֊ դէկ բացատրութիւն տըւի , որ կընամ միտքերնուդ մէջը հաստատել թէ՝ ա֊ մենևին Ճշմարիտ Ողջում չէք կընար ընել , թէ որ դուք Ճշմարիտ սրտով յօյսերնիդ բոլորովին Քրիստոսի վը֊ րայ չի դնէք՝ մեղքերնուդ ներում ըլ֊ լալու համար և Աստուծոյ ընդունելի ըլլալնուդ համար ։

Ճշմարիտ ապաշխարողը միշտ ա֊ սանկ Քրիստոսի վրայ իր յոյսը պիտի դնէ ։ Մեղքին չարութեանը վրայ իր ունեցած տեղեկութիւնը իրեն կըցու֊ ցընէ որ՝ ասանկ մէկ փրկիչ մը իրեն հարկաւոր է ։ Եւ ուրիշ կողմէն , այս փրկիչին մահը իրեն կըցուցընէ թէ՝ խնտոր շատ գէշ բան մըն է մեղքը ։

Իր յանցանքը իմանալը իրեն Ճամ֊ բայ կըցուցընէ՝ տեսնալու թէ որչափ

Ինքը կերպարանք առնի մէկ փրկչի մը. և ուրիշ կողմէն, աս փրկչին մահը կըցուցընէ իրեն՝ իր յանցանքին մեծութիւնը։ Իր ենթելքը ապերախտ մեղքը՝ որն որ շատ յայտնի կերպով իր սրտին հպարտութիւնը ու յամառութիւնը ցուցուցեր էր, անէ՝ որ իր փրկիչը մէկ դի ձգեր էր, և կամքը չէր ունեցեր անոր վրայ յոյսը դնելու։ Ինչպէս կրնայ ինքը ճշմարիտ Օգնում մը գտնալ՝ թէ որ առջի բերանը աս մեղքին վրայ չի դըր ձայնէ. Ինչպէս կրնայ աս մեղքը զըղջալ՝ և անկէց ետ կենալ, թէ որ ինքը իր այսչափ ատեն մէկ դի ձգած փրկիչին վրայ չի վազէ՝ և բոլոր սըրտովը անոր վրայ իր յոյսը չի դնէ նէ։

Ան ապաշխարողը ստանկովալ իր յոյսը ան փրկիչին վրայ կըդնէ. այսինքն՝ ան նոյն աստուածային սէրը՝ հնազանդութիւնը՝ ու աստուածպաշտութեան բնաւորութիւնը՝ որն որ ինքը մեղքերը ապաշխարելուն մէջ պի-

որ ցուցընէ նէ , նոյն փրկչին վրայ ունեցած հաւատքին ալ մէջը կըցուցընէ : Վասնզի աս բաները մեկտեղ կերթան . որչափ զօրութիւն որ մէկին մէջը կայ նէ՝ այնչափ զօրութիւն ալ մէկալին մէջը պիտի ըլլայ : Աս զօրութիւնները մեկտեղ կըգտնըւին միշտ ան՝ ամէն մէկուն սրտին մէջը՝ որոնք որ ճշմարտապէս մեղքէ դարձած են զԱստուած սիրելու ու անոր հնազանդելու :

Գանք որ ճշմարիտ Զղջում ընողին տրտմութիւնը առջի բերանը աս կերպով դէպ 'ի Քրիստոսի վազցուց զինքը : Ան տրտմութիւնը աս փրկիչին վազցուց զինքը , որ աս ճամբով կրնայ ինքը ցուցընել իր սէրը առ Աստուած և հնազանդութիւնը անոր իշխանութեանը : Աս փրկչին վազցուց զինքը , որ աս կերպով կրնայ ցուցընել իր երախտագիտութիւնը սաստիկ առատ շնորհքի մը համար : Աս փրկչին վազցուց զինքը , որ սաստ-

կամ կրնայ տառապիլ իր միջոցներուն թո-ղաւթիւն՝ ու անհոգելի տգիտութիւն։

Նոյն տրամութիւնը իր մեծագոյն միջոցներուն համար ու ճամբայ կրա-նայ ճշմարիտ ող Ջայողին ամէն ժմեր՝ որ Քրիստոսի վրայ ապաւինի. քան-զի գիտէ թէ՝ միայն իր անուանովը ու իր միջնորդութիւնովը ինքը Աստուա-ծային օգնութիւնը կընդունի, որ աս աշխարհին մէջ՝ իր պարտաւորու-թիւններուն՝ իր ձախորդութիւննե-րուն և իր կեանքին փորձութիւննե-րուն մէջը անվտանգ յառաջանայ։

Ինքը ալ ամէն բանը կրնայ ընել՝ Քրիստոսի զինքը զօրացունելովը։

Պինտ առաջ երբոր ինքը Աստու-ծոյ զաւակ կըլլայ շնորհքով, կըսկը-սէ ալ իր յոյսը Քրիստոսի վրայ դը-նել։ Ասոր իր երկինքը երթալու ճամբորդութեան բոլոր ընթացքին մէջը ճշմարիտ հաւատքով Քրիստո-սի մօտ ըլլալ կրնայի։ Յոյս կունենայ որ խաղաղութիւնով մահուան հան-

## ԳԼՈՒԽ. ԺԹ։

---

**Մըշակ ձանձրացնէ մեզ մեկնումը և Օղջում պէտք ընել : Ինչ եղան որ էր ներքին մը շատերը Օղջում ընելէն :**

Մօրս · Սիրելի՛ զաւկըներս՝ Աս-տուծմէ շնորհակալ եմ ես, որ այս-չափ պատեհութիւն ունեցայ՝ վերջա-պէս մեր խօսակցութիւնովը Օղջու-մին ինչ ըլլալը ձեզի աղէկ մը հաս-կըցունել :

Կարելի է որ ձեր միտքէն կանցնի թէ շատ եվելօք համոյական կըլլար ձեզի մէկ շինծու պատմութիւն մը լսել նոյնչափ երկար : Բայց ես մի-այն թէ կըյուսամ որ, դուք անով չէ պիտի կըրնայիք կշտանալ մը իմանալ այնչափ՝ որչափ որ աս իմ խօսքերովս ես ձեզ կիշտացուցի նէ :

Շատ հարկաւոր է՝ որ պատանիներ-ըը ու տղաքը չէ թէ միայն զբօսար-ձակի պատմութեան ձեւով գիրքեր ու-

նենան, հապա երբեմն ալ պէտք է որ՝ օգտակար դժուարիմաց գիրքեր ալ ունենան. անանկ գիրքեր՝ որ անոնք՝ հասկընալու համար խորունկ խորհուրդներ պէտք են :

Թէ որ ասանկ գիրքեր հասկընալու ջանք չունենաք նէ դուք, չէք կրնար ձեր միտքը լուսաւորել՝ կամ պիտանի գիտութիւն մը ստանալ :

Անանկ դիւրին պարզ գիրքերը՝ որոնք իրենց մէջ քիչ մը Կրօնքի ճշմարտութիւններ ունին, կարդալով դուք չէք կրնար կատարելապէս ստանալ Կրօնքի գիտութիւնը :

Պէտք է ձեզի խոհեմ և ուշադիր ըլլալ Կրօնքին ճշմարտութիւնը սորվելու, և խորհրդածութիւն ու քըննութիւն ընել անոր վրայ, աշխատանք քաշել աղէկ մը հասկընալու ան ճշմարտութիւնը :

Ահա աս բաներն էին ան մէկ քանի պատճառները, որոնց համար որ ես աս աշխատութեան նիւթին

տառապէս. Ողջում ըրէք մեղքերնուդ վրայ, և ձեր յոյսը Տէր Յիսուս Քրիստոսին վրայ դնէք:

Պետրոս. Մայր, երէկ մենք ամենքըս մեծ սենեակին մէջն էինք, ու Ներսէսը ինծի հարցուց Թէ՝ մէկ մարդ մը ո՞րչափ ժամանակի մէջ զղջում կրնայ ըներ. ես ալ անոր պատասխան տուի՝ Չգիտեմ: Ներսէսն ըսաւ՝ որ ինքը կը խորհի Թէ երկար ժամանակ պէտք է մէկ մարդու մը, որ ամեն հրամանքերդ մեզի երկար բարակ բացատրած խորհուրդները ու զգացումները իր սրտին մէջը ունենայ: Ես ալ աս կերպը խորհեցայ: Բայց երբոր ամենքս էվերօք միասնաչութեան մէջ էինք աս բանին վրայով, խօսք ըրինք մէկմեկու որ՝ աս իրիկուն հրամանքերդ հարցունենք ան խնդիրը:

Մայր. Սիրական իմ զաւակներս, որ դուք աս խնդիրը ինծի հարցունել խորհերէք. ես կը ջանամ ձեզի ասոր վրայ պատասխան տալ:

Չեմ քանի որ՝ Տագնապելու, հայ... կնէ ըլլալը զգալով խմածութեան համար՝ պէտք է որ ասոնց, նոյն կարգովը ան, իմ ձեզնէ մէկիկ մէկիկ սրտցաւ բանալու, միաբերնուդ ընդունէք :

Հապա ատ, բանը հարկաւոր է, որ դուք ան կերպ բնաւորութիւն մը ու- նենաք՝ (այսինքն՝ Աստուծոյ վրայ ու Քրիստոսի վրայ անհամեմատ խորհուրդ- ներ և յօժարութիւններ ;) որ ան բը- նաւորութիւնը ունենալ, սկսելով նիդ՝ հետզհետէ Աստուծոյ շնորհքովը պէտք յառաջանաք, ամէն իմ սորվա- գրուած խորհուրդներս ու զգացումնե- րըս ունենալ : Այսինքն՝ թէ որ ձեր կեանքը շարունակէ, և յարմար մի- ջոցներ գործածելու ըլլաք նէ :

Բայց թէ որ դուք այս միջոցները չէք գործածէք, այսինքն՝ Աստուծոյ շունչը սորվելու միջոցը, և աղօթք ը- նելու պարապիլը, և աղէկ գիրքեր կարդալը, ու խելացի և բարեպաշտ մարդոց հետ տեսութիւն ընելը, և

ապաշխարելէն, և Աստուծոյ վրայով ժա-
մանակ զբաղած՝ ունենայ նէ, ալ երբեմն
քիչ ժամանակ պէտք է ապաշխարե-
լու ։

Ինքը ճշմարտապէս տրտում կ'ըլլայ
բոլոր իր առջի մեղքերուն համար ։
Ինքը կը ցանկայ անանկ մէկդի ձգել ։
Ան մեղքերը ատելու կ'ըլլայ՝ մեծ
սուրբ, տրտում ու բարի Աստուծոյ
մը դէմ գործուած ըլլալուն համար ։
Աստուծոյ շնորհքին կը յուսայ՝ որ թո-
ղութիւն ըլլայ իրեն Քրիստոսի ձեռ-
քովը ։ Իր փրկիչին վրայ ինքը իր
յոյսը կը դնէ ։ կը հաւատայ՝ որ Աստուծոյ
Սուրբ Հոգին իրեն սորվեցունէ, օգ-
նութիւն ընէ՝ ու զօրացունէ զինքը ։
և իր մտքին հաստատ խորհուրդովը
կը վճռէ որ ալ անկէ ետև պիտի սի-
րէ Աստուծոյ՝ ու անոր պիտի հնազան-
դի ։

Հիմայ ճիշդ որչափ ժամանակ
պէտք է մարդու մը աս խորհուրդնե-
րը ու զգացումները ունենալ նէ ,

բուն վրայ Հիմայ ապաշխարեն , ու կոյսը Քրիստոսի վրայ դնեն ։ Եւ թէ որ ինքը բոլոր մարդոց պէս մեղանչական բնաւորութիւն մը չունենայ Աստուծոյ վրայով նէ՝ շատ ժամանակ չի պիտոր քշէ որ ան զղջումը ընէ ինքը ։

Հիմայ սիրելի՛ զաւակներս , դուք ինչու համար Աստուծոյ առջին զեղջի զալ չէք սկսերկոր ձեր գործած մեղքերնուդ վրայ . ու ինչու չէք սկըսերկոր յոյսերնիդ Քրիստոսի վրայ դնելով , և իր Սուրբ Հոգիին օգնութիւնը ու զօրութիւնը խնդրելով , անանկ առաջադրութիւն մը ընել՝ որ ալ ասկէ ետև Աստուած սիրէք՝ ու անոր հնազանդիք ։

Ինչու դուք չէք սկըսեր աս կերպը ընել այսօր , ա՛ս իրիկուն , հիմայ ։

Պօղոսօր . Մայր , իմ վրաս բան մը կայ , որ աս բանը ընելէն ետ կըձըգիկոր իս ։

Եղիա . Անանկ ալ իմ վրաս կայ՝ մայր ։

Լորենց. Իմ վրաս ալ :

Մայր. Ո՛վ զաւկըներս, ի՞նչ բան է ան ձեր վրայ եղածը, որ ձեզ ետ կը ձգէ կոր ասանկ մէկ մեծ ու բարի էակ մը՝ այսինքն Աստուած սիրելէն՝ ու հնազանդելէն, և ձեր յոյսը ա-սանկ մէկ բարերար և բարեգութ փրկիչի մը Յիսուս Քրիստոսի վրայ դնելէն : Ան ձեր կամապաշտ ու չար զգացումներն ու բաղձանքներն են : Դուք այնչափ ձեր անձը կը սիրէք ու ձեր աղէկութիւնը միայն կը փնտռէք՝ որ չէք փափաքիր ու աշխատիր որ ուրիշներն ալ աղէկ ու երջանիկ ը-նէք :

Կուզէք որ իրենց անձին երջան-կութիւնը նուազի կամ կործանի, եր-բոր ան ձեր անձին մխիթարութեանը ու վայելչութեանը հետ կը խառնը-վի : Դուք ուրիշ բաները Աստուած սիրելէն էվելի կը սիրէք, թէպէտ և գիտէք որ ձեր պարտքն է սիրել ա-նիկա ձեր բոլոր սրտովը, և ուրիշնե-

ըրն ալ ինքըզինքներնուդ պէս սի-
րել ։ Դուք իր պատուէրները բըռ-
նել չէք ուզեր ։ Դուք կամաւոր չէք
իր իշխանութեանը հնազանդ ըլլալու
'ի բոլոր սրտէ ։ Ասկից կերեւայ որ՝
դուք չէք ուզեր ինքըզինքնիդ Աստու-
ծոյ առջեւը խոնարհեցունել , փեղ-
ջի գալ , Աստուծոյ դառնալ և իր ո-
ղորմութիւնը խնդրել Քրիստոսի
ձեռքովը ։ Բոլոր աս բաները ուրիշ
բան չեն՝ միայն թէ ձեր կամապաշտ
ու չար զգայութիւններն ու բաղձանքնե-
րըն են ։

Ով իմ զաւկըներս , ես այսչափ
յայտնի կերպով ձեզի խօսեցայ . որ
ան իմ պարտքս էր՝ սանկ ընելու ։
Կուզեմ որ դուք ալ զգաք ներսիդի-
նիդ ձեր յանցանքը՝ ու ձեր գլխուն
գալու վտանգը ։ Մտմտացէք բոլոր
մեր աս իրիկվան զրուցած բաներուն
վրայ ։ Անոնց վրայ մտմտացէք դուք՝
երբոր Աստուծոյ առջին առանձին
աղօթք ընելու կըլլաք նէ ։

ծի քանի կըհարցունէք , ու ես անոնց վրայ կրցածիս չափ պատասխան կու-տամ ձեզի ։

Պրէֆէոր . Ա՛ղյր , ես՝ որ մեղաւոր եմ ամէն իմ գործքերուս մէջը , ար-ժա՛ն է ինծի՝ որ աղօթք ընեմ Աստու-ծոյ իր Սուրբ Հոգիին համար , որ ինծի օգնէ Օղջում ընելու ։

Ա՞յր . Տեսնանք արժա՞ն է մի ։ Ձեր սա կամապաշտ ու չար զգացումները ու անձնասէր բաղձանքները՝ ինչպէս որ տեսանք , անոնք են ձեզ ետ ձը-գողները մեղքերնուդ վրայ զղջում ընելէն . Եւ ատոր համար դուք մեղադ-րելի էք ասանկ զգացումներ ու բաղ-ձանքներ ունենալնուդ համար ։ Դուք շատ յանցաւոր էք անոնք ձեր սրտին մէջ ունենալնուդ համար ։ Ատոր հա-մար դուք մեծ վտանգի մէջ էք ։ Դուք Աստուծոյ օրէնքովը դատապարտու-թեան մէջ էք՝ զԱստուած ձեր բոլոր սրտովը չի սիրելնուդ համար , եւ ու-րիշները ձեր անձին պէս չի սիրելու

նուդ համար ։ Ձեր յանցանքն ալ մեծցեր աճեր է՝ բոլոր սա կերպ բաներուն համար որոնում չըլլալնուդ պատճառաւ և Քրիստոսի մէջ նորդութեամբը Աստուծոյ. մեզի մատուցած շնորհքները չընդունելնուդ պատճառաւ ։

Թէ որ Աստուած ձեզ թող տայ՝ որ մեղքի մէջ յառաջ երթաք, ու անապաշխար մեռնիք, ու յաւիտեանս թշուառ ըլլալու ըլլաք նէ, ալ անատեն չէք կրնար դուք իրեն ամենեին զանգատ մը ընել, ըսելով թէ ինքը վայլած կերպովը ինչպէս պէտք էր նէ՝ չըրաւ ձեզի ։

Ինչու որ ինքը հիմայ պատրաստ է ձեզ ընդունելու, թէ որ իրեն երթալու ըլլաք՝ մեղքերնուդ վրայ զըղջում ընելով ու Քրիստոսի վրայ ապաւինելով նէ ։ Բայց դուք սա ճամբով երթալ չէք ուզերկոր. ու սիրտերնիդ չուզերկոր իրեն երթալ ։

Ու թէ որ դուք ընդունիք անատեն

ան պատիժը՝ որուն որ ձեզ արժանի կընէ մեղքերնիդ , մէկը չէք կրնար մեղադրել՝ միայն թէ ինքզինքնիդ ։

Ի՞նչ պէտք է ընել ուրեմն ։

Պէտք է որ մեղքերնիդ զղջաք՝ ու Քրիստոսի վրայ յոյսերնիդ դնէք՝ որ փրկըվիք · պէտք է որ՝ ան բանը դուք ինքիրմէննուդ ընէք · ինչու որ յատ_ կապէս ձեր զեղջի գալը ու Քրիստո_ սի վրայ ձեր ապաւինիլը պէտք է · պէտք է որ դուք ընէք ան ։ Թէ որ մէկ մը ան զղջումը ընելու ըլլայ ձեր տեղը նէ , անոր ըրածը ձեզի չի սեպ_ վիր ։

Ափսոս , որ ձեր կամապաշտ ու չար զգացումները ու բաղձանքները ձեզ ետ կըձգէնկոր ատիկա ընելէն ։

Բոլոր ան բաները գիտցէք դուք , և իմացած եղէք , որ դուք խեղճ՝ կո_ րուսեալ՝ մեղաւոր՝ անօգնական բռ_ նադրուածներ էք ։

Դուք ահա սաստիկ վտանգի մէջ էք · ու թէ որ Աստուած ձեզի չողոր_

մի , մէկ յոյս մը չըլլար ձեզի ։ Ինքը ձեզի օգնելու պարտաւոր չէ . բայց կարելի է որ՝ իր մեծ ողորմութեանը նայելով կօգնէ ձեզի . իր Սուրբ Հոգին միայն կրնայ յաղթել ձեր սրտին վերջի գալու ու Քրիստոսի վրայ ապաւինելու ան յօժարութիւնը ։ Կարելի է որ Աստուած ատ Սուրբ Հոգին ալ տայ ձեզի ։ Ինքը տրուած է ան Հոգին ուրիշներուն՝ որոնք որ խեղճ , կորսուած , ու մեղաւոր էին ձեզի պէս . իր գթութիւնը ու ողորմութիւնը շատ մեծ են ։

Իր բարերար խնամքն էր , որ ձեզի տրուած մէկ մայր մը . ու ձեզի շընորհեց պատեհութիւն , որ ձեր պարտաւորութեանը վրայով տրուած բացատրութիւնը լսէք ։ Իր Սուրբ Հոգին է , որ ձեր խղճմտանքը արթընցուց՝ որ մտմտաք ձեր ամէն յանցանքին վրայ , ու ձեզի առաջնորդեց՝ որ դուք ուզեցիք աղօթք ընելու անոր ։

Իրա՛ւ զաւակս , Աստուծոյ գացէք՝

ու իր Սուրբ Հոգիին համար խնդրելը ըրէք։ Քանզի ձեր աղօթքները կարելի է որ անանկ պատճառներ պիտի ըլլան, որ կրնաք տեսնալ, ու զգալ էվելի զօրաւոր կերպով ձեր մեղքը ու ձեր վտանգը։

Իրաւ՝ գացէք դուք Աստուծոյ, ու իր Սուրբ Հոգիին համար աղաչանք ըրէք. քանզի պէտք է որ՝ դուք մեղքերնիդ զզջաք, ու Տէր Յիսուս Քրիստոսի վրայ ապաւինիք. բայց ինչ միջոցով, չի կայ մէկ ուրիշ յարմար միջոց մը, միայն թէ Աստուծոյ աղօթք ընելու միջոցովը։

Իրաւ՝ գացէք Աստուծոյ, և իր Սուրբ Հոգիին համար աղաչեցէք զինքը։ Երբոր դուք կերթաք անոր, երբոր անոր առջևը կըխոնարհիք, երբոր ձեր աղաղակը իր ողորմութեանը համար դուրս կըձգէք, անտեն իսկոյն՝ կարելի է որ, Հոգին կըտրվի ձեզի ու մէյմալ կրնայիք որ՝ ալ սիրտերնիդ կուզէկոր անոր իշխա-

նութեանը հնազանդելու , ու զղջում ընելու ձեր ամէն ըրած անհնազանդութեանը ու իրեն դէմ ապերախտութեանը վրայ , ձեր յոյսը Յիսուս Քրիստոսի վրայ դնելու՝ որն որ ձեր մէկ հատիկ փրկիչն ու Յոյսն է ։ Բայց միտքերնիդ բերէք որ՝ ձեր ըրած աղօթքը ձեզ արժանաւոր չեն կրնար ընել Աստուծոյ մէկ շնորհքը ընդունելու ։ Բանզի թէ որ ինքը ձեզի իր շնորհքը կուտայ , ան չէ թէ՝ իրեն ձեր վրայ մէկ աղէկ բան մը տեսած ըլլալուն համար պիտի ըլլայ . հապա ան անոր համար է՝ որ ինքը այնպէս կրնարէ ձեզի իր շնորհքը տալ Քրիստոսի ըրած արդեանցը ու քաշած չարչարանքներուն համար ։

Միտքերնիդ բերէք նաև , որ ինչ բան որ դուք ուրիշ կերպ ըրած էք , Աստուած յայտնի ցուցուց՝ որ եթէ մեղքերնուդ վրայ չապաշխարէք՝ և Քրիստոսի վրայ յոյսերնիդ չի դընէք նէ , չէք կրնար փրկուիլ դուք ։

Գրիգոր. Մայր, տակաւին մէկ բան մը ինծի նեղութիւն կուտայկոր՝ այս բանին վրայ մտմտուք ընելով։

Մայր. Ի՞նչ է ան տղաս։

Գրիգոր. Հրամանքդ որ մեզի զրուցեցիր թէ՝ միայն Հոգին Սուրբ կրնայ յաղթել մեր սրտին մեղանչելը, ու Քրիստոսի վրայ ապաւինելու անյօժարութիւնը։ Ուրեմն ինչպէս կրնամ ես ինքիրմէս մէկ բան մը ընել, որովհետեւ Հոգին Սուրբ պիտի առաջնորդէ ինծի զեղջի գալու։ Ես ինքիրէնս մինակ չի պիտի կրնամ զըղջում ընել։ Պիտի սպասեմ մինչեւ որ Աստուած իր Սուրբ Հոգին ինծի տայ, որ անիկայ այս բանը պիտի ընէ՝ երբոր ինքը աղէկ ըլլալը խորհի նէ։

Մայր. Չեմ ըսեր տղաս, մէկ դըժուարութիւն մը չի կայ ասոր մէջը։ Չեմ ըսեր որ՝ ես կրնամ կատարելապէս այս բանին բացատրութիւն տալ։ Բայց ուրիշ շատ կերպ բաներու մէջ ալ կը տեսնենք դժուարութիւններ։

որոնք ամենևին հիմունս ․ ած հաւատքս ու բռնած ճամբայս չեն կրնար խաբանել ։

Զոր օրինակ՝ Աստուած է ան ցորեններուն աճելուն պատճառողը ․ բայց ան չաճիր՝ թէ որ մարդս չի տնկէ՝ չի քրէ անոր տեղը նէ ։

Աստուած է ան հովը փչելուն պատճառը, ու մէկ նաւի մը առագաստները ան հովով լեցուցողը, անանկ որ՝ որպէս թէ ինքը ան նաւը կըյառաջացունէ խաղորմակի ովկիանոսին մէջէ, բայց պարտ ամենայնիւ նաւապետին և նաւավարներուն պէտք է որ մեծ ջանք ընեն ․ թէ որ հոգերնին չըլլայ նէ՝ նաւը ամենևին իր տեղը չի պիտի հասնի ։

Աստուած է՝ որ մեր կեանքը կըպահէ ամէն օր ․ “ Որ իր մէջը մենք կապրինք՝ ու կըշարժինք, և մեր էութիւնը ունինք ” ․ Բայց մեզի ալ պէտք է՝ որ մեր կեանքին պահպանութեանը համար շատ հոգածութիւն-

ներ ընե՛նք , չէ՛ նէ՝ շուտով կըմեռ-նինք ։

Ասանկ ալ միայն Սուրբ Հոգին է ․ որ կրնայ յաղթել ձեր սրտին զըղ-ջում ընելու՝ ու Քրիստոսի վրայ յոյսերնիդ դնելու անկարողութիւնը ․ բայց այսու ամենայնիւ աս բաները ձեր անձին բուն գործքովը ու ջան-քովը պիտի ըլլայ ։ Գանք որ՝ ինտո՞ր Սուրբ Հոգին կըներգործէ ձեր սըր-տին մէջը , նաեւ ձեզի կառաջնորդէ գործելու , անանկ որ ան ըրած մեղ-քերնուդ վրայ զըղջանիք՝ ու Քրիս-տոսի վրայ ապաւինենիդ ։ Ճշմարտա-պէս ձեր բուն գործքը կըլլայ , ես ան չեմ կրնար բացատրել ։ Բայց աս գի-տեմ թէ Հոգին Սուրբ ան կամ մէկ ուրիշ ճամբով մը ձեզի կամեցող ըլլալ կուտայ աս բաները ընելու ։ Մենք միայն աս գիտենք որ՝ ան ա-նանկ մէկ կերպով մըն է , որն որ ձեր ազատ ներգործութեանը կործանում մը չըլլար , որ մեղքերնիդ ապաշխա-

թելը ու Քրիստոսի վրայ ապաւինե-
լը ինքնիրենմնուդ կընէք · և որ այսու-
ամենայնիւ ինքն է՝ որ կըներգործէ
ձեր մէջը ; որ դուք աս բաները ընէք
ինչպէս Առաքեալը կըսէ ։ “ Վախով
ու դողով հոգիներնուդ փրկութիւնը
գործեցէք · քանզի Աստուած է՝ որ
ձեր ներսիդին կըներգործէ , որ կա-
մենաք՝ ու (աղէկութիւն) ընէք՝ (իրեն
հաճելի ըլլալու համար” ; Փիլ · Բ ·
13 ։

Զաւակս՝ շնորհակալ եղիր , որ ան
աս կերպն է ։ Մ՚ի վշտանար դուն ան
դժուարութիւններուն համար , Թէ
ինչպէս ատանկ կիմացուի ։ Դնա՛ դուն
քու Արկնաւոր Հօրըդ · Կիմանաս դուն
ներսիդիդ մէկ յօժարութիւն մը իրեն
երթալու ։ Աս ան Սուրբ Հոգիէն է ,
որ արդէն ձեզի իր օգնութիւնը կը-
շնորհէ ։ Աս օգնութեանը վրայ ձեր
կախումը իմացէք ։ Աստուծոյ նայե-
ցէք որ օգնութիւն ունենաք , և ձեր
անձին զօրութիւնն ալ գործի դրէք ։

Կեցէ՛ք ձեր Երկնաւոր Հօրը առջեւը․ ձեր հոգին անոր առջեւը ձգեցէք․ մեղքերնիդ անոր խոստովանանք եղէք․ Հոգին Սուրբը ընդունելու համար աղօթք ըրէք ։ Աղօթք ըրէք՝ որ ինքը ձեզի ճամբայ ցուցունէ զղջի գալը՝ ու Քրիստոսի վրայ ապաւինելու ։ Ապաշխարեցէ՛ք՝ ու յոյսերնիդ այս փրկիչին վրայ դրէք , եւ անտարակոյս պիտի գտնաք անոր խաղաղութիւն ու խնդութիւն ։

Սո բաները չէ թէ ձեզմէ մեկուն՝ հապա ամէնուդ ալ կըզգուշացնէ սիրելի՛ տղաքս ։ Ատոնց վրայ մտմտացէ՛ք դուք՝ առանձին եղած ատեններնիդ ։

Գիշեր բարի ։

# ԳԼՈՒԽ ԺԲ.

Մանկավարժական խորհրդածութեանց դեղին գոյնը յորդորն ընկեր համար հայրենասէրներ ։

Ալ մենք ան Դամարին խաթուննին՝ ու իր տղոց մէջ տեղը եղած խօսակցութիւնը լմընցուցինք մինչև աստեղ ։ Այս կըյուսանք որ՝ աս գիրքը Աստուծոյ օրհնութեամբը օգտակար պիտի ըլլայ կարդացողներուն ։ կամ ասոր կարդացված ատենը լսողներուն ։

Արդեօք կըրնա՞յ ըլլալ որ մէկ մարդ մը՝ թէ պզտիկ եղեր թէ մեծ, երբոր աս խօսքերը կարդալով բոլոր գիրքէն անցած ըլլայ, անանկով՛ իր մեղքերուն համար զզջում ընելու Աստուծոյ առջևը՝ և Տէր Յիսուս Քրիստոսին հաւատալու նիւթերուն վրայ մտմտալովը, անիկա իր սրտին մէջ հող ու կակիծ մը չըզգայ, կամ զգայ ալ նէ՝ քիչ մը զգայ ։

Թէ որ ատենն մէկ մարդ մը տա-ղերքին խօսքերուն մտիկ ընելու վրայ է նէ, իրմէն կը խնդրըվի՝ որ չի ճանճ-րանայ մեր աստեղ քանի մը խոր-հուրդներ ալ առաջ բերելնուս վրայ, որպէս զի անոնց վրայ ինքը խորհըր-դածութիւն ընէ ։

Բարեկամս, դուն չե՞ս խորհիր որ՝ մեղքին վրայով եղած ան ստորագրու-թիւնը ճշմարիտ է ։

Ան մեղքը այնպէս մեծ չարիք մը չէ՞ մի՝ ինքիրմէն դէշ ըլլալովը ։ որ ան Ամենամեծ ու Ամենաբարի Աստուծոյն դէմը կը գործուի, անանկ մէկու մը դէմը՝ որ ինքը կատարեալ իրաւունք ունի, որ իր ամէն արարածները զին-քը սիրեն՝ ու իրեն հնազանդին ։ Ա-րեմն՝ ասկէ ետև տակաւին պիտի շա-րունակե՞ս մի յանձնառու չըլլալ Աս-տուծոյ իրեն վայլածը տալու ։

Մեղքը մէկ մեծ չարիք մը չէ՞ մի, որովհետև Աստուծոյ ան կատարելու-թեանը ու իշխանութեանը դէմ է, ո-

տէրոջն վրայ՝ որ իր մեծհատակն մեռնե-
լը Որդին աշխարհ խրկեց մեղաւորնե-
րուն համար, որ արիւն թափէ խաչին
վրայ, որ անով քեզի թողութեան ու
ազատութեան համար մէկ ճամբայ մը
բացուի։ Մտմտա՛ դուն աս փրկիչին
ան իր քաղցրիկ գթութեանը վրայ։
Իր զարմանալի բարերարութեանը վը-
րայ՝ որ քեզի ցուցուց։ Ինք դուն ան
անարգ ապերախտութեան մէջը ապ-
րէ կենաս մի տակաւին այսանկ մէջ
Ողորմած Տէր մը ունքեր՝ այսանկ մէջ
բարեգութ փրկիչի մը դէմ։

Մեղքը մեծ չարիք մը չէ՞ մի, որ
երհականակն՝ ու միջոց Աստուծոյ եր-
կու տեսակ պատուէրները կըկոտրէ,
որոնք որ ինքը մեզի տուեր է՝ որ իր
յարգը ու իշխանութիւնը պահենք, ու
մեր երջանկութիւնը հաստատ ըլլայ
և՛ աս աշխարհիս մէջ՝ և՛ գալու աշ-
խարհին մէջ։ Աս պատուէրները՝ ո-
րոնց թէ որ մենք հնազանդ ըլլանք,
իրեն ուրիշ ամէն պատուէրներուն ալ

հնազանդելն ըլլալու մանկանց կըրթանքն։
Ան պատուէրներէն ինչպէս դուն ալ
գիտես՝ շատ պարզ ու շատ պնդածա-
են։ Ինչ որ տղայ մը ըլլայ՝ կրնայ
հասկընալ անոնք. «Սէր Տէր Աստ_
ուածդ պիտի սիրես՝ քու բոլոր սրտ_
տովդ ու քու բոլոր հոգիովդ՝ ու քու
բոլոր զօրութիւնովդ՝ ու քու բոլոր
մտքովդ. և քու ընկերոջդ քու անձիդ
պէս պիտի սիրես»։ Ասոնք վայելուչ
պատուէրներ չե՞ն մի. ասոնք ամեն
բաներու մէջ շիտակ չե՞ն մի։ Ա՛րտ_
մըտած ասոնց վրայ՝ որչափ որ կուզես
նէ, ու նայէ թէ կրնա՞ս մէկ սխալ մը
գտնալ ասոնց մէջ։ Ո՞վ կրնայ ար_
գելք անոնք մէկ կերպով մը փո_
խել, որ եղածէն աւելի աղէկ ըլլան։
Չե՞ս տեսնար որ՝ ան սիրոյ ու արդար
իշխանութեան հնազանդութեանը հո_
գին՝ որ աս պատուէրները մեզի կը_
պահանջէ, բաղդատմակապէս մեր մը_
խիթարութեանը ու երջանկութեանը
հարկաւոր է։ ան ալ աս աշխարհիս

մէջը ։ Այս հատուածը զոան առանց
երկրպագութեան , որ ինքն ամէն մար-
դիկ հնազանդելն առ երկու պատուի-
րանքներուն ։ Մինչ ամենաները այինք-
ունենանք շատ երջանիկ ու հանձնյա-
կան ընտանիքներ , և դրացնութիւն-
ներ , ու գեղեր , և քաղաքներ ․ և ա-
նոնկով բոլոր երկիրը կըսկըրի նմա-
նէր երկինքի ։

Աշխարհիս վրայ եղած սա ամէն
չարիքներուն ու թշուառութիւննե-
րուն և նեղութիւններուն պատճառը՝
Աստուծոյ աս երկու պատուէրներուն
անհնազանդ գտնըվիլնիս չէ՞ մի ։ Որչափ
մեծ պիտի ըլլայ քու յանցանքըդ՝ որ
մինչև կենացդ աս օրը աս պատ-
ուէրները քակելու վրայ եղեր դուն ։

Մեղքը մեծ չարիք մը չէ՞ մի՝ ա-
նոր համար՝ որ հոգին կըմեռցու-
նէ , ու անկէց ետև կըխնդրուի հո-
գիին , որ սա մեղքը ընելովը՝ ինքը
ցած ու անարգ մէկ մը եղած է ։

Իրաւ՝ քա՛րեկամս , թէ որ խղճմտը-

տանիլ ուրեմն զքեզ , պիտի գտնես՝ որ
Մեղքը քիչերենը նըւաստ ու անարգ
է , որ մեղաւորը չէ թէ միայն քեն
կը մոռքին տաճարը անարգ կընէ , հա-
պա Յիսուսին ալ ու փրկիչին , և քա-
ղըր մաքուր ու սուրբ էակներուն ալ
զզուելի ու ատելի կընէ։ Ասէ որ խըղճ-
մտանք ունիս նէ զքեզ՝ սա բանը պիտի
զգաս . և կարծեմ թէ շատ անգամ
զքեզ սա կերպովը զգացեր ալ ես ։
Այսինքն՝ երբոր Ճշմարիտ Քրիստո-
նեաներուն վրայ նայեր ես թէ՝ անոնք
Մեղքը մէկ դի ձգելով , ու զԱստուած
սիրելով՝ և անոր հնազանդ ըլլալով՝
իրենց ընկերներուն բարիք ընելու
վրայ ըլլալով անոնք մէկ աղէկ ու զո-
վելի յառաջադիմութիւն մը ունեցեր
էին ։ Դուն իմացար , և տակաւին ի-
մացիր՝ որ անոնց ունեցած վարքը չէ
թէ միայն ազատութեան ու պարտաւո-
րութեան կըվերաբերի , հապա Ճըշ-
մարիտ իմաստութեան ու ծայրագոյն
պատուոյ ։

Մեղքը մեծ չարիք մը չէ՞ մի, որ քեզի ասանկ գեղեցիկ յառաջադիմութիւն ունենալէն մէկ դի կը ձգէ, և քեզ ինքզինքէդ կզուելի ու անարգ կընէ՝ երբոր Աստուծոյ դէմ մեղք գործելու կըլլաս։

Մեղքը չարիք մը չէ՞ մի, որ՝ եթէ անոր վրայ զղջում չըլլըրվի՝ և Աստուծոյ շնորհքովը Քրիստոսով թողութիւն չըլլըրվի նէ, անիկա մարդուն հոգին թշուառ ու ողորմելի կընէ յաւիտեան։

Խորհէ կամամ՝ մանաւանդ դուն, որ քու հոգիդ ամենևին չի պիտի մեռնի․ պիտի ապրի ան մինչև յաւիտեան․ քու միտքիդ գաղափարելու չի կրցած սարսնելովը ու զարնելովը ուրիշ ապրի ան։

Թէ որ քու բնակած տեղդ բոլոր տուները բարակ աւազով լեցուն եղած ըլլան, դուն ալ սկըսես մէկ տանը մէջէն եղած աւազը դուրս հանել մրջիւններուն պէս՝ մէկ հատ մը

զարդաւոր ու միլեոնաւոր գունտեր ըլլայէն , և միլեոն տարին մէկ հատ մը միայն անոնցմէ մէկուն առնըւելու ըլլար նէ , մինչև որ ամէնն ալ բոլորովին հատնելու ըլլան՝ ծովչափ տարիներ պիտի քաշէ արդեօք՝ որ ան ամէնը մէկ կողի տարւի ։

Հիմայ թէ որ ետևէ իյնանք աս բանին վրայ խորհելու նէ , միտքերնիս կը հողնի ու կը շփոթի ։ Թո՛ղ աս տանիկ մնայ ։ Գանք որ՝ բոլոր այսչափ բազմաքանակ գումարներով հաւաքած տարիներուն թիւովը մարդուս հոգին անշուշտ պիտի ապրի . և այնչափ ժամանակ անցնելէն ետքն ալ՝ ճիշդ նորէն ապրելու սկըսածի պէս պիտի ըլլայ ։ Այնչափ տարիներուն մեծ թիւովը նորէն նո՛ր պիտի յառաջանայ ապրելովը՝ հազարս ու միլեոնաւոր ժամանակներ ալ վրայ գալու որ ըլլայ , և անտանն ալ պիտի յառաջանայ ապրելովը , և պիտի շարունակէ՝ անվերջանալին ապրելէն ետ չի

կենալովը ։ Հոգին պիտի ապրի յաւ-
իտեանս ։

Հիմա՛ ի՞նչ է այն երջանկութեան կամ թշուառութեան բոլորական հաշիւը, որ հոգին պիտի վայելէ կամ քաշէ իր անվախճան գոյութեանը մէջ հանդերձեալ աշխարհին մէջը ։ Կրնա՞ս մի դուն այն հաշիւին որչափ ըլլալը գաղափարել ։ Ի՞նչ այնչափ շատ է՝ քու այս աշխարհքին մէջը վայելած կամ քաշած տանջանքներդ, որչափ որ քու յաւիտենական գոյութիւնդ շատ երկար պիտի ըլլայ՝ քու աս կեանքիդ մէջը եղած քանի մը կարճ տարիներէն ։ Արդեն՝ չես կրնար դուն մտմտալ՝ թէ որչափ մարդուս հոգին մեծ արժէք ունի ։ Ի՞նչ օգուտ կ'ըլլայ քեզի, թէ որ դուն ձեռք ձգես բոլոր ճոխութիւնները, հարստութիւնները՝ ու աշխարհիս մեծութիւնները, բայց քու հոգիդ կորսնցունես, և Աստուծոյ ու փրկչին երեսէն ու լոյսէն անկնիս և երջանիկ

արարածներուն երեսէն իյնաս, և դատապարտըլլիս՝ որ յաւիտեան թըշուառութեան մէջը երթաս բնակելու քեզի պէս մեղաւոր ու եղկելի արարածներուն հետը :

Մեղքը՝ թէ որ անոր վրայ Զըղջում չըլլըվի, ու ան մեղքին թողութիւն չըլլայ Աստուծոյ շնորհքովը՝ Քրիստոսի միջնորդութեամբը նէ, ան ամէն չարիքները պիտի բերէ մարդուս հոգիին վրայ, գիտցած եղիր որ՝ քու հոգիիդ վրայ :

Աստուած ասանկ գըրուցեց մեզի Սուրբ Գիրքին մէջը : Իր խօսքերը միշտ ամէն իժիր ճշմարտութիւն են . ինքը մեզ չի կրնար խաբել . ինքը մեզի իր դիտաւորութիւնը յայտներ է՝ ու չի փոխեր անիկա : “ Ասանկ սիրեց Աստուած աշխարհը՝ որ իր մէկ հատիկ Որդին տըւաւ, որ՝ ով որ անոր հաւատայ նէ չի կորսըվի, հապա յաւիտենական կեանքը ունենայ . և անիկա՝ որ չի հաւատար Որդիին, չի

պիտի տեսնայ ան կեանքը · հապա Աստուծոյ բարկութիւնը անոր վրայ կը մնայ” ։ Յով · Գ · 16—36 ։

Ի՛նչպէս սոսկալի պիտի ըլլայ ա-տանկ մաքուր ու սուրբ՝ ասանկ արդար ու բարի էակին՝ այսինքն Աստուծոյ բարկութիւնը ։ Եւ աս բարկութիւնն ալ պիտի մնայ ան Հոգիին վրայ, և միշտ պիտի կենայ ան բարկութիւնը՝ որչափ ժամանակ որ Հոգին կապրի նէ ։

Ով սիրելի՛ բարեկամս, դուն կըր-նաս մի անզեղջ մեռնելու համարձա-կիլ, և աս բարկութիւնը քու Հո-գիիդ վրայ մնալ տալու ։ Կրնա՞ս հա-մարձակիլ անապաշխարութեան մէջ կենալ տակաւին՝ քանի որ մարդուս կեանքին վերջը ասանկ անյայտ է նէ, և որ Աստուած քեզ մէկ վայրկեանի մը մէջ կարելի է որ յաւիտենակա-նութեանը մէջ առնէ ձգէ ։

Մեղքը մեծ չարիք մը չէ՞ մի անոր համար, որ մարդուս Հոգին ասանկ յաւիտեանս կործանման մէջ կրնայ

ձգել ։ Ո՜վ քեզի՛ ալ էվելօք գէշ չէ՞ մի՝ որովհետեւ դուն ան մեղքին պատճառաւը աս կործանումին մէջը հիմայ կիյնալու մօտ ես ․ և ստուգիւ պիտի կիյնաս անոր մէջ, թէ որ ըրած մեղքիդ վրայ չի զղջաս՝ ու յոյսդ Քրիստոսի վրայ որ չի դնես նէ ։

Հիմայ արդեօք դուն կըսկըսե՞ս մի՝ մեղքին չարութեան մէկ մասը տեսնալ ։ Ո՜չ, դուն տակաւին շատ քիչ կըտեսնաս կոր ան ։ Թէ որ Աստուծոյ տեսածին պէս դուն ալ կրնայիր տեսնալ՝ իր ունեցած իսկական ու սոսկալի նշանովը նէ, իսկ և իսկ մեծ խռովութեան մէջ կըլլայիր քու գործած յանցանքիդ՝ ու անկէց յառաջ եկած վտանգին պատճառաւը ։

Աշխատէ իմ բարեկամս՝ աշխատէ՛, որ էվելի պայծառ ու աղէկ կերպով մեղքին գէշութիւնը տեսնաս՝ ու քու կին էվելօք մեղանչական ըլլալդ մէկ սուրբ ու արդար Աստուծոյ մը առջեւ գիտնաս ։ Ամբրամ դուն աս գիրքին

մէջին կախուած բանտերուն վրայ․
խորհէ անոնց վրայ սրտի մտօք՝ ու
առանձին մասնաւոր տեղ մը ։ Կար‑
դա՛ նաև Աստուածաշունչ գիրքը․ որ
անոր մէջը տեսնաս մեղքին գէշու‑
թիւնը ։ Անտեղը պիտի տեսնաս թէ
ինչպէս Աստուած մեղքը կատէ ։ Ան‑
տեղը պիտի տեսնաս Քրիստոսի մար‑
մնանալը սէրը , որ քեզ մեղքէն ու
մեղքին սոսկալի փորձանքներէն խա‑
լըսելու համար մեռաւ ։ Անոր մէջը
պիտի գտնաս այն ամէն բանը , որ քե‑
զի զղջում ընելու առիթներ կրնան
ըլլալ , ու յոյսդ Քրիստոսի վրայ
դնելու ։ Անտեղը պիտի կարդաս այն
յաւիտենական աղէտին ամէն կերպ
երկիւղները իմացընող խրատները ,
որ կըզգուշացունեն քեզ գալու բար‑
կութենէն փախչիլ ։ Անտեղ պիտի
կարդաս այն երկինքին բոլոր բերկ‑
րութիւնները , որոնք քեզ կըհրաւի‑
րեն՝ որ ընդունիս Աստուծոյ շնորհքը ։
և այնպէս պատրաստութիւն ունենաս
անվախճան սրբութիւնը ու երջան‑

կութիւնը վայելելու։ Դուն քովը աս հարկաւոր բաներուն աղէկ մը միտքդ տալ չի պիտի՞ սկըսես մի՛ սա օր, սա ժամը, հիմայ։ Դուն առանձին տեղ մը չի պիտի՞ քաշվիս մի, և Աստուածաշունչը ձեռքդ առնես ու կարդաս, և մտմտաս այն բաներուն վրայ՝ որոնք որ քու հոգիիդ յաւիտենական երջանկութեանը կըվերաբերին։ Ինչ բան է՝ որ քեզ ասիկա ընելէն ետ կըձգէ՝ կարգիլէ։ Ինչ բան է՝ որ քեզի արգելք կըլլայ անմիջապէս Աստուծոյ երթալու աղաչելու, և քու անձդ իր առջևը դնելու՝ մեղքերդ խոնարհ կերպով իրեն խոստովանելով, բրած յանցանքերդ համար սրտանց զղջում ընելով, Քրիստոսի ձեռքովը իր շընորհքը խնդրելով, և իր Սուրբ Հոգիին ներգործութեանը համար աղաչանք ընելով, որ անանկով կարող ըլլաս դուն սկըսելու անանկ մէկ կեանք մը վարել Աստուծոյ վրայ սէր ու հնազանդութիւն ունենալով և իր_

քը պաշտելու ջերմեռանդութիւն ունենալով ։

Հիմայ դուն սրտիդ մէջը մէկ փափաք մը՝ թէպէտ թող քիչ ըլլայ, ունի՞ս մի աս բանը ընելու ։ Ո՛հ սիրելիս, դուն ատ փափաքը կատարել նայէ · Աստուծոյ շնորհաց հոգին քեզ Քրիստոսի ետևին կը ձգէ ատով, բայց դուն աս հոգին չուզելով կընէ՞ս մի ։ Ա՞ս հոգին պիտի ձանձրացունէ՞ս մի՝ որ քեզմէ մէկդի երթայ, ու ձգէ քեզ քու մտքիդ ամենամեծ կուրութեանը ու սրտիդ կարծրութեանը մէջ ։ Դուն՝ Աստուծոյ բարեկամ ըլլալու՝ ու Քրիստոսի հետ բաժին ունենալու բոլոր յոյսերդ մէկ դի պիտի թողո՞ւս մի ։ Նորէն քու մեղքերդ ու սխալ ճամբուդ պիտի դառնա՞ս մի, և աս կերպով քու հոգիիդ յաւիտենական կորստեանը վտանգի՞ն մէջը մտնալու պիտի համարձակիս ։ Ա՛, մտմտա սիրելիս, աղէկ մտմտա դուն աս խօսքերուն վրայ ։

Կեցի՛ր բարով ։